ՓԵՏՐՎԱՐ
№ 2 1964 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

թյունները, լուծում տիեզերական բազմաթիվ առեղծվածներ։ Քո սեղանի վրա է արդեն Լուսնի գլոբուսը։ Շատ ժամանակ չի անցնի, և դպրոցներում կհայտնվեն նաև Մարսի ու Վեներայի գլոբուսները, խորհրդավոր գաղտնիքներ պարունակող այդ մոլորակների քարտեզներն ու մանրամասն նկարագրությունը։ Այդ մեծ խնդիրներից շատերը լուծելու եք դուք ինքներդ։ Ո՛վ գիտե, մեր «Պիոների» այսօրվա ընթերցողներից մեկին չի՞ վիճակվելու վերջնականապես լուծել անհետացած Ատլանտիդա աշխարհամասի դարավոր առեղծվածը։

Բայց տիեզերական խնդիրներից բացի, դեռ ինչքա՜ն չպարզված գաղտնիքներ կան մեր մոլորակի վրա, որոնք սպասում են իրենց կոլումբոսներին ու պրժևալսկիներին։ Չէ՞ որ այն ամենը, ինչ այսօր մենք գիտենք երկրի մասին, միանգամից չի ստեղծվել։ Նախնական ենթադրություններն ու համոզումները դարերի ու հազարամյակների ընթացքում ճշտվել, հերքվել ու կրկին անգամ ապացուցվել են հետագա սերունդների կողմից։ Հին հնդիկների



կարծիքով երկիրը ոչ թե գնդաձև էր, այլ՝ տափակ, և գտնվում էր փղերի մեջքին։ Իսկ բաբելոնացիները, որոնց գրավոր տեղեկություններն ունեն ավելի քան 6 հազար տարվա պատմություն, երկիրը պատկերացրել են որպես ծովով շրջապատված մի հսկա լեռ, որի արևմտյան լանջին գտնվում էր Բաբելոնը։ Նրանց համար Բաբելոնը աշխարհի ծայրն էր, իսկ Արևը դուրս էր գալիս ծովի միջից և նորից սուզվում ծովը։ Հին հույները երկիրը նմանեցրել են վահանաձև, փոքր-ինչ ուռուցիկ հարթության, որը դարձյալ շրջապատված էր ջրով։ Հին հունական փիլիսոփա Պյութագորն ու նրա հետևորդները հանգեցին այն եզրակացության, որ երկիրը գնդաձև է։ Իսկ հին աշխարհի մեծ գիտնական Արիստոտելը (4-րդ դար մ. թ. ա.) ոչ միայն ընդունեց երկրի գնդաձևությունը, այլև դա ապացուցեց գիտականորեն։ Բայց այստեղ վերջակետ չդրվեց։ Հետագա դարերում երկրի գնդաձևության հարցը մեծ վեճերի առարկա է դարձել։ 17-րդ դարի վերջերին Ֆրանսիայում սկսեցին վիճել՝ երկիրը մանդարինի՞ ձև ունի, թե՞ կիտրոնի։ Նյուտոնը պնդում էր, որ մանդարինի ձև ունի։ Ֆրանսիական ակադեմիան որոշեց ստուգել Նյուտոնի տեսակետը։ Այդ գործը հանձնարարվեց աստղադիտարանի դիրեկտոր Ջովանի Կասինիին, որը չափումներից հետո հերքեց Նյուտոնի տեսակետը։ Բայց մեծ գիտնականը չհրաժարվեց իր համոզմունքներից և շարունա՛կ պնդում էր, որ Կասինին չափումների մեջ սխալ է թույլ տվել։ Այս վեճը, որ գիտության մեջ հայտնի է որպես մանդարինի և կիտրոնի վեճ, տևեց շուրջ 50 տարի։ Ջովանիի մահից հետո նրա տղան՝ Ժակը, որն արդեն աստղադիտարանի դիրեկտոր էր, որոշեց պաշտպանել հոր տեսակետը։ Նա գիրք գրեց, որտեղ ապացուցում էր, որ մեխանիկայի օրենքի համաձայն, երկիրը պետք է կիտրոնի ձև ունենա։ Այդ վեճին վերջ տալու նպատակով ֆրանսիական ակադեմիան 1735 թվականին կազմեց երկու էքսպեդիցիա. մեկը՝ հասարակածում, մյուսը՝ Հյուսիսային բևեռում։ Էքսպեդիցիայի մասնակիցները մեծ դժվարությունների և կյանքը վտանգելու գնով 8 տարվա ընթացքում հազիվ կարողացան լուծել այդ խնդիրը։ Պարզվեց, որ, իրոք, Կասինին սխալվել էր չափումների մեջ և Նյուտոնը ճիշտ էր։

Գիտական վեճերի, հետազոտությունների ու ճանապարհորդությունների միջոցով շարունակ հարստանում է աշխարհի ամենահետաքրքիր ու հնագույն գիտություններից մեկը՝ աշխարհագրությունը։ Տիեզերական ու երկրային բազմաթիվ գաղտնիքներ ու առեղծվածներ սերտորեն առնչվում են աշխարհագրության հետ և լուծվում նրա կողմից։ Եվ պատահական չէ, որ անսահման մեծ է պատանի ընթերցողների հետաքրքրությունը դեպի աշխարհագրությունը։ Հաշվի առնելով մեր ընթերցողների ցանկությունը, խմբագրությունն այս համարը, գրեթե ամբողջովին, նվիրեց աշխարհագրությանը։ Տպագրված նյութերը կարող են օգտակար լինել նաև աշխարհագրական խմբակի պարապմունքների և համապատասխան հավաքույթների ժամանակ։

Գրեցե՛ք ձեր կարծիքը այս համարի մասին։

Պրոֆ. Ա. Բ. [illegible]

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԱՐԱՏԻ ԳԱԳԱԹԻՑ

1903 թվականի օգոստոսին գիտական մի արշավախմբի հետ Արարատի գագաթն է բարձրացել ԱՐՇԱՎԻՐ ՄԽԻԹԱՐՅԱՆԸ: Ահա թե նա ինչ է գրում այդ վերելքի մասին:

Երբ գիշերային օթևանից մենք նայում էինք Մասիսի գագաթին, մեզ թվում էր, թե այդ ժայռերը գտնվում են ուղիղ նրա տակ և թե հասնել ժայռերին՝ նշանակում է հասնել գագաթին, բայց հիմա, ժայռերի գլուխը բարձրանալուց հետո, մենք զարմանքով տեսանք, որ լեռան գլուխը դեռ շատ հեռու է մեզանից և դեռ շատ ուժ պետք է գործ դնել նրան հասնելու համար: Սակայն այս հանգամանքը մեզ չհուսահատեցրեց. կրկնապատկած ուժով մենք սկսեցինք նորից մագլցել, կախ ընկնել ժայռերից, հենված մի ձեռքի կամ գավազանի վրա՝ մյուսով քաշել դեպի վեր մարմնի ամբողջ ծանրությունը, սողալ օձի նման, գործել ձեռքով, ոտքով, մեջքով, գավազանով, ինչքան և ինչ կերպ միայն ընդունակ է մարդու գյուտաբեր մարմինը: Մեր ջանքերը պսակվեցին հաջողությամբ. անընդհատ ժայռից ժայռ բարձրանալուց հետո՝ մենք անցանք վերջապես այդ դժվար կիրճը և կանգնեցինք մի խճուտ թեքվածքի առաջ: Պետք էր հիմնավորապես հանգստանալ, մանավանդ որ մեզանից մեկը՝ Դավիդովսկին, որ հագել էր մորթով աստառած հաստ կիսավերարկու, արդեն հոգնել էր և դժվարությամբ էր բարձրանում: Նստած ժայռերի վրա՝ մենք սկսեցինք նախաճաշել և նայել մեր առաջ բացված տեսարաններին, որոնք, քանի մենք վեր էինք բարձրանում, այնքան ավելի լայն, ավելի հրաշալի էին դառնում:

Բավական ժամի չափ հանգստանալուց հետո, մենք շարունակեցինք ճանապարհը խճուտ լեռնալանջով: Դա բավական երկար, բավական թեք և բավական տաժանելի էր: Մեր շնչառությունն սկսել էր դժվարանալ. կարծես մենք տանում էինք դեպի վեր ոչ մեր մարմնի սովորական ծանրությունը միայն, այլ՝ ահագին բեռներ: Մյուս դժվարությունն այն էր, որ անկարելի էր այդ խճուտ թեքվածքի վրա գտնել մի քար նստել հանգստանալու, ինչպես անում էինք մենք հաճախ ժայռերի մեջ. - ծծումբի գարշ, անտանելի հոտ լցնում էր քիթն ու բերանը և ստիպում շտապով հեռանալ, փախչել այդ գարշահոտ տեղից: Աբիխի և Բրայսի կարծիքով ծծմբային հոտը առաջանում է նրանից, որ լեռան՝ որձաքարերից բաղկացած զանգվածի մեջ գտնվում են երկաթային ծծումբի բյուրեղներ, որոնք քիմիապես անընդհատ լուծվելով՝ արձակում են այդ անտանելի հոտը: Ծծմբային խճուտ տարածությունը համարյա բոլորովին ազատ էր ձյունից: Հեռանալով այդ տեղից՝ մենք նորից ընկանք ժայռերի մեջ. դրանք արդեն լեռնագագաթի վերջին արգելքներն էին: Երբ մենք, գլուխներս կախած, առանց այս ու այն կողմ նայելու, շնչասպառ հևալով, մի կերպ քարշ էինք տալիս ոտքերս դեպի վեր, լսեց հանկարծ բժիշկ Շաբելյանի ձայնը վերևից.

— Ուռա՜, հասա՜նք, հասա՜նք:

— Ուռա՜,- կրկնեցինք մենք փոքր-ինչ ներքևից և արագացրինք ոտքերս:

Մի քանի քայլից հետո մենք արդեն կանգնած

էինք Մասիսի ձյունապատ գագաթի ժայռոտ շրթունքին։

25—30 քայլ հեռու մեզանից, գագաթի ամենաբարձր կետի վրա, խրված հավիտենական ձյունի ու սառույցի մեջ, փոքր-ինչ թեքված դեպի հարավ-արևելք, կանգնած էր օդերևութաբանական կայանի չորսոտնյա, նեղ ու բարձր, փայտյա շինվածքը։ Հարկավոր էր հասնել նրան, բայց դա հեշտ չէր. քամին, որ անընդհատ փչում էր ամբողջ ճանապարհին, գագաթի վրա կրկնապատկեց իր զորությունը. անցնել այդ 25—30 քայլն առանց օժանդակ միջոցի անհնար էր։ Գագաթը ամբողջովին ծածկված էր սառցանման, ամուր, փայլուն ձյունի հսկայական շերտով, որ զգալի կերպով թեքված էր դեպի արևելք. մի անզգույշ քայլ, քամու մի զորեղ շունչ, և մենք կգլորվեինք դեպի Մասիսի Վիհը—դեպի ս. Հակոբի պատռվածքը, ուստի մեր միջի ամենից ավելի քաջն ու անձնազոհը՝ բժիշկ Շորեյխերը, կապեց մեջքից մի հաստ թոկ, որ մենք վերցրել էինք մեզ հետ, հագավ երկաթյա սուր գամերով կոշկատակեր վերցրեց ալպյան երկու գավազան և առաջ ընկավ։ Դողդողալով և ջղային թափով խրում էր նա կոշիկներն ու երկու գավազանները սառույց-ձյունի մեջ, իսկ մենք սրտատրոփ սպասում էինք նրա անվեհեր քաջագործության ելքին. վերջապես նա հասավ կայանին և, քանդելով թոկը մեջքից, մի ծայրը կապեց կայանի սյունին, թոկի մյուս ծայրը գտնվում էր առաջնորդ Ահմեդ-բեկի ձեռքում։ Բռնելով մի ձեռքով պինդ ձգված թոկից, իսկ մյուսով ամուր-ամուր խրելով գավազանը ձյան մեջ՝ ես ու Դավիդովսկին ևս իրար հետևից հասանք կայանին։ Մենք գտնվում էինք արդեն Մասիսի հարավ-արևելյան գագաթի ամենաբարձր կետի վրա...

Մի մեծ, բոլորաձև, ընդհանուր պատվանդանի վրա բարձրացած երկու վեհ կիսագնդեր՝ ծածկված սպիտակ, ողորկ, մաքուր, հավիտենական ձյուն ու սառույցով, որոնք տեղ-տեղ փայլում ու պսպղում են միջօրեի արևի ճառագայթների տակ, իբրև ադամանդյան ցող-ադամանդներ, մի լայն, ցածրահասակ բյուրեղ-սառույցի նման փայլփլող ձորակ, որ անցնելով հյուսիս-արևմուտքից դեպի հարավ-արևելք, իբրև մշտական անջրպետ, բաժանում է իրարից այն զույգ կիսագունդ-եղբայրներին, ձյուն փրփուր զառիվերներ, որոնք հանկարծական զորեղ թեքվածքով կիսագնդերի կատարներից իջնում են դեմառդեմ դեպի միջավայրի ձորակը մի կողմից և մյուս կողմից ավելի թույլ թեքվածքով դեպի լեռնագագաթի արտաքին շրջագիծը, և այս ամենի գլխին բաց կապույտ շողշողուն երկինք, որ խոնարհած դեպի վայր՝ համբուրում է հյուսիս-արևմուտքի կիսագնդի ամենաբարձր կետը. ահա ինչպես տեսա ես Մասիսի գագաթը։ Վեհ, ազդու տեսարան. կարծես փրփուր ծովի մեջ երկու հսկայական ալիքներ բարձրացել են դեմառդեմ փոթորկի ժամին ու այդպես մնացել անշարժ։ Նայում ես, նայում այդ ձյուն-ալիքներին, որոնք այնպես լուռ, այնպես անսահման բարձր՝ հեռու, ցածրում երևացող աշխարհից՝ կանգնած են առաջիդ, և թվում է քեզ, թե դա մի երկրային պատկեր չէ, որ տեսնում ես դու, այլ մի անտես, անճանաչ, ընդմիշտ սառած ու մեռած մոլորակի մի հրաշալի բեկոր.



որ գլորվել է մի անգամ երկնքի խորքից ու ընդմիշտ կանգ առել երկնքի ու երկրի մեջտեղում։

Փոքր-ինչ հետո, հանդարտված, ես սկսեցի դիտել Մասիսի գագաթի մանրամասնությունները։ Իր ամբողջությամբ գագաթը բոլորակ է, մոտ 500 մետր շրջագծով, բայց այդ ամբողջությունը, ինչպես տեսա, մի ձորակով բաժանվում է համարյա երկու հավասար կիսագնդերի — երկու գագաթների։ Գագաթներից մեկը՝ հյուսիս-արևմտյանը, նկատելի կերպով բարձր է մյուսից՝ հարավ-արևելյանից, բայց այդ բարձրությունը, իմ աչքի չափով, համենայն դեպս ավելի չէ 15—20 սանտիմետրից։ Փոթորկի կատաղի զորությամբ փչող քամու պատճառով մենք փորձ անգամ չարինք մտնելու ձորակը և, ապա բարձրանալու հանդիպակաց հյուսիս-արևմտյան գագաթը, որը բոլորովին նույն ձևն ու կազմությունն ուներ, ինչպես և հարավ-արևելյանը, որի վրա կանգնած էինք մենք։

Ընկերները, համարյա մի ամբողջ ժամ դողդողալով, աշխատում էին կայանի առաջ. կապտած ձեռքերով ետ էին անում պտուտակները, ստուգում գործիքները, գրում նրանց ցույց տված թվանշանները։ Ջերմաչափերի ցույց տված թվանշաններից երևաց, որ օդի ամենաբարձր ջերմությունը Մասիսի գագաթին, ստվերի մեջ, ավելի չէ զերոյից, իսկ ցուրտը հասնում է 50 աստիճանի։

Ես այդ ժամանակ քամուց պաշտպանվելու համար՝ կանգնած մի սաժենաչափ բարձրություն ունեցող սառած ձյան փոքրիկ բլրակի առաջ, դիտում էի այն լայնածավալ անզուգական տեսարանը, որ բացվում է Մասիսի գագաթից, մոտ 17.000 (16,920) ոտնաչափ բարձրությունից։

Ամենից առաջ ես հայացքս ուղղեցի դեպի հյուսիս, դեպի մեր հայրենի հին բնագավառը, որ երկայնանիստ լայն փռվածքով հյուսիս-արևմուտքից դեպի հարավ-արևելք տարածվում է Արարատյան դաշտը։ Աննման գեղեցիկ է այդ դաշտը իր ամբողջությամբ, որ ես գրկում եմ հայացքի վայրկենական պտույտով։ Եզերավորված համարյա բոլոր կողմերից, բացի հարավ-արևելքից, լեռների բարձր ու ցածր, գրեթե անընդհատ ձգվող ալիքաձևան շղթաների հսկայական բազուկներով՝ նա գրկել է իր մեջ անհամար մանր ու խոշոր կանաչազեղ օազիսներ, որոնք տեղ-տեղ կպչում-միանում են իրար ու կազմում ընդարձակ կանաչուտների զեղատեսիլ փռվածքներ և տեղ-տեղ հեռանում իրարից ու բաց անում դաշտի՝ ամառային բարկ արևից խանձված ու դեղնած կուրծքը։ Դիտակի օգնությամբ ես տեսնում եմ անհամար գյուղեր՝ երբեմն մոտ-մոտ, երբեմն և հեռու իրարից՝ ցրված օազիսների զմրուխտ ծոցի մեջ...

Իմ դեմ հանդիման կանգնած է Արագածը՝ աջ ու ձախ փռած իր երկայն, ահագին թևերը և անհամար բլուրներով, ձորերով ու դարավանդներով ծածկված կուրծքը ուղղված դեպի Արարատյան դաշտը։ Շիրակի բարձրագլուխ հսկան բոլորովին այլ կերպարանք ունի այստեղից։ Ցածր, լայնության վրա ուռած ու փռված՝ կարծես մեկը հուժկու ձեռքով խփել է նրա գագաթին և խրել պարանոցը լեռան կրծքի մեջ. և այսպես բազմաճյուղ գագաթը մնացել է նստած հսկայի լայն ուսերի վրա առանց պարանոցի, առանց գագաթնաձև բարձրության։ Շիրակի կողմից միշտ ձյունապատ ու խրոխտ՝ այս կողմից նա համարյա զուրկ է ձյունեղեն զարդից և միայն տեղ-տեղ սպիտակ շերտեր հազիվ փայլում են նրա փոքրիկ, ցածրիկ գագաթի վրա. ու, այդ թիկնավետ, լայնալանջ, ուռուցիկ տիտանը այն գեղեցիկ սարն է, որին ես, ծնունդ Շիրակի, այնքան սիրում էի մանկության օրերում։ Փոքր-ինչ հեռու Արագածից, դեպի արևելք, երևում են Արայի լեռը, Մայմեխը, հյուսիս-արևելքում՝ Գեղամա լեռների շարքերը, տեղ-տեղ ձյունապատ գագաթներով, իսկ հեռու-հեռու հյուսիսում, մշուշի թանձր քողով պատած, կանգնած է Կովկասյան լեռների հսկայական շղթան, անհամար գագաթներ շարված են այնտեղ կողք-կողքի և թվում է, թե դա մի ծով է, մի օվկիանոս, որի վրա փոթորկի ժամին բարձրանում և իջնում են վիթխարի ալիքները։ Ձյունազարդ հսկաները, մեկը՝



արևմուտքում, իսկ երկու-երեքը՝ ուղիղ իմ դեմ հանդիման, պարզ երևցնում՝ են իրենց գլուխները մշուշի միջից: Այո, ծերունի Մասիսը անթարթ հայացքով միշտ նայում ու տեսնում է իր բախտակից ծերուկ Էլբրուսին, և ո՞վ կարող է ասել, թե ինչ են խոսում իրար հետ ձյուն ու սառույցով շղթայված այդ հսկաները... Հյուսիս-արևմուտքում, ավելի ես թանձր մշուշով պատած, երևում է մի կորնթարթ, բավականաչափ երկայն, կարծես, կապույտ գիծ. ի՞նչ է այդ. արդյոք Սև ծովը չէ՞, որ լեռների անվերջ խառնվածքի միջից զոլել է մի բաց տեղ և իր անհանգստա ալիքները երևցնում է Մասիսին, թե՞ դա լոկ երևակայություն է միայն, տեսողության պատրանք, դժվար է ասել:

Արևելքում, Արարատի ընդարձակ հովտի հեռավոր սահմաններում, ցիր ու ցան բարձրանում են բազմաթիվ մանր ու խոշոր, գորշ կարմրավուն բլուրներ, որոնց հետևում կանգնած են Զանգեզուրի և ապա Ղարաբաղի լեռները: Նրանք էլ, երևում է, ունեն իրենց մեջ ձյունազարդ գլուխներ, որոնք լեռների խառնիխուռն կուտակումների հետևից՝ երկարացնում են պարանոցները՝ հարյուրավոր վերստերի հեռավորությունից մի ակնարկ ձգելու ծերուկ նահապետի վրա:

Շատ դժվար է ճշտությամբ որոշել լեռնային երկրորդական հսկաների տեղերն ու անունները: այնքան նրանք տարօրինակ տեսք ունեն այստեղից, այնքան խառնված ու խճողված են մյուս լեռների հետ: Ընդհանուր տեսքը արևելքից՝ Գեղամա, ապա հյուսիսային ու հարավային Սյունիքի-լեռնային բարձր պարիսպն է, որ ձգվում իջնում է դեպի Նախիջևան և այնտեղ անհայտանում հեռու հորիզոնում:

Արևելահարավից անհման սիրուն ու գեղեցիկ է Արարատի լայն, անծայր հովիտը, որի մեջտեղում անհամար բնական պտույտներով հոսում, անցնում է մայր-Արաքսը, նրա ափերի ամբողջ երկարությունը, որքան միայն կարող է կտրել մարդու աչքը, ծածկված է դալար կանաչությունների անընդհատ ժապավենով, որ այնքան դուրեկան կերպով տարբերվում է հովտի աջ ու ձախ կողմից տարածվող արևախանձ, գորշ դաշտավայրերի անվերջ տարածություններից: Ո՞րտեղ է անհայտանում Արաքսը՝ դժվար է ասել, միայն երևում է, որ նրա պտույտները նկատելի կերպով, ուղիղ դեպի հարավ ընթանալուց հետո, շեղվում են դեպի արևելք և չքանում մի հարթ-հավասար մշուշապատ տարածության մեջ: Կապույտ ծո՞վն է դա. համենայն դեպս պնդել այդ հանգամանքի վրա ինձ թույլ չի տալիս դիտակս, որ շատ էլ զորեղներից չէ:

Հարավի մերձակա տեսարանը ամբողջովին բռնել է Փոքր Մասիսը իր ամփոփ ստորոտներով, որոնցից արևելյանը իջնում է դեպի Արարատի հովիտը, իսկ արևմտյանը՝ դեպի մի այլ հովիտ, որ ձգվում է երկու Մասիսների կողքից ուղիղ դեպի հարավ: Փոքր և Մեծ Մասիսների մեջտեղում, այդ արևմտյան եզերքին, երևում են բազմաթիվ բարձր ու ցածր, կարմիր-մոխրագույն բլուրներ, որոնց գլուխները հրաբխային բաժակի միանման բոլորակ ձև ունեն. նրանցից մեկի գոգավորության մեջ ես տեսնում եմ մոխրակույտեր, մյուսի մեջ ջրային կանաչով ծածկված մի փոքրիկ լճակ, որ երբեմն-երբեմն պսպղացնում է իր պղտոր ալիքները արևի տակ:

Արևմտյան հովիտը, որի վերին՝ հյուսիսային մասը պատկանում է Թուրքիային և կազմում է Բայազետի սանջակի մի գավառակը, իսկ ստորին՝ հարավային մասը մտնում է Մակուի պարսկական խանության մեջ, լի է ընդարձակ բարբաբուններով, որոնք երկու Մասիսների ստորոտներից իջնում-տարածվում են հովտի մեջ մինչև նրա լայնության կեսը, ու մի անծանոթ գետակ, ուղիղ, առանց նկատելի կերպով աջ ու ձախ թեքելու իր ընթացքը, ձգվում է դեպի հարավ. գետակի ափերում տեղ-տեղ երևում են փոքրիկ կանաչուտներ՝ քրդերի ձմեռային օթևաններ՝ գետեղված, Անմեղի ասելով, հին հայկական գյուղատեղերում... Այդ ընդարձակ հովտում և ապա նրա արևմտյան եզերքից սկսվող ավելի ես ընդարձակ լեռնադաշտերի վրա, մինչև Բայազետ մի կողմից և մյուս կողմից մինչև Մակուի սարերը, չեն մնացել հայ գյուղեր և միայն մի քանի աղավաղված անուններ քրդերի բերանում պահում են նրանց տխուր հիշատակը:

Հարավային կողմում, Փոքր-Մասիսի գագաթի վրայից և ապա հարավ-արևմուտքից, հեռու երևում է Կորդվաց լեռների շղթան, որ մի հսկայական բազուկով պտույտ է գործում ու միանում Տավրոսի և Վասպուրականի լեռների հետ:

Հրաշալի են արևմուտքում և արևմտահարավում Բարձր Հայքի, Սասունի և Վասպուրականի լեռները Արարատի գագաթից. շարք-շարք, մեկը մյուսից ցածր, մեկը մյուսից բարձր, կանգնած են թափանցիկ մառախուղի անսահման հեռավորության մեջ, և թվում է, թե մեկը դիտմամբ շարել է նրանց այդ կարգով, որպեսզի ամենքն էլ, առանց մեկը մյուսին նախանձելու, տեսնեն հայրենի լեռների հսկային: Մեկիկ-մեկիկ ես հաշվում եմ ինն երկար, հյուսիս-արևմուտքից դեպի հարավ-արևելք տարածվող ուղղաձիգ շարքեր և ապա դիտակս կենտրոնացնում Սիփանի վրա:



Չքնաղ գագաթ, արժանի երկրորդ Մասիս կոչվելու. լեռների անվերջ շարքերի հետևից նա բարձրացրել է ամբողջապես ձյուների մեջ թաղված գլուխը և կարծես մրցում է Մասիսի հետ իր վեհությամբ: Հասարակ աչքով, նույնիսկ առանց դիտակի, ես տեսնում եմ նրա հպարտ բարձրությունը, նրա սպիտակ, երկնամերձ ձյուները, նրա գորշ-կապուտակ վերնակողերը:

Այո, դա ամբողջ Հայաստանն է, որ երևում է Մասիսի գագաթից իր հեռավոր և մերձավոր սահմաններով, իր ծովածավալ դաշտերով, իր լայն հովիտներով, իր կապուտակ գետերով, լեռների իր այնքան սիրուն շարքերով. նրանք այնպես գեղեցիկ, այնպես սերտ, այնպես համերաշխ շրջանով են բոլորված ծերուկ նահապետի շուրջը:

Օ՜, երկրպագում եմ ես քեզ Մասիսի գագաթից, ո՜վ անուշ հայրենիք, ո՜վ դրախտ-երկիր:

Նկ. ՎԱՉԷ ԹԵՎԱՆՅԱՆԻ




# ԵՐԿԻՐՆ ՈՒ ՄԱՐԴԻԿ

1000 թվականին ամբողջ աշխարհում եղել է մոտավորապես 275 միլիոն մարդ: Այդ թիվը կրկնապատկվել է ընդամենը 7 դար հետո: Ապա բնակչության աճը շատ արագ է տեղի ունեցել և 1800 թվականին հասել է մեկ միլիարդի, իսկ հարյուր տարի հետո՝ մեկ ու կես միլիարդի: 1960 թվականին, վաթսուն տարի անց, բնակչության թիվը կրկնապատկվել է, հասնելով 3 միլիարդի: Գիտնականների կարծիքով 2000 թվականին մարդկանց թիվը կկազմի 5 միլիարդ: Այժմ երկրագնդի վրա հաշվվում է 3 միլիարդ 200 միլիոն մարդ:

Հետաքրքրական է, որ հազար մարդուն զարգացած երկրներում առաջվա նման ընկնում է 15—20 ծնունդ, իսկ թույլ զարգացած երկրներում՝ 40—45: Սակայն բժշկության ձեռք բերած նվաճումների շնորհիվ մեծ չափով պակասել է մեռնողների թիվը, հատկապես երեխաների շրջանում:

Ամեն տարի Սովետական Միությունում ծնվում է մոտ 5 միլիոն երեխա:

Ըստ աշխարհամասերի յուրաքանչյուր հազար մարդուց ապրում են.

Ասիայում—577 մարդ,
Եվրոպայում—195 »
Ամերիկայում—137 »
Աֆրիկայում—85 »
Ավստրալիայում և
Օվկիանայում—6 »

Հաշվումների համաձայն մեր մոլորակի վրա մինչև հիմա ապրել է 77 միլիարդ մարդ:

Մարդկանց միջին բարձրությունը
(սանտիմետրերով)

| Տարիքը | 1901—1905 թթ. | 1958—1959 թթ. | տարբերությունը |
|---|---|---|---|
| 3 տարեկան | 80,0 | 95,5 | +15,5 |
| 5 տարեկան | 99,5 | 107,4 | +7,9 |

Միջին քաշը (կիլոգրամներով)

| Տարիքը | 1901—1905 թթ. | 1958—1959 թթ. | տարբերությունը |
|---|---|---|---|
| 3 տարեկան | 12,5 | 14,8 | +2,3 |
| 5 տարեկան | 16,5 | 18,4 | +1,9 |
| 7 տարեկան | 20,0 | 22,9 | +2,9 |




# Պիգմեյներ



Դեռևս դարեր առաջ Եվրոպայում պատմություններ էին տարածված Նեղոսի անտառներում ապրող սևամորթ թզուկների մասին: Հոմերոսը նկարագրել է խիզախ թզուկների և հյուսիսից չված կռունկների միջև տեղի ունեցած կռիվը: Այդ մասին հիշեցնում է նաև Արիստոտելը. «...Այնտեղ ապրում է պիգմեյների ցեղը: Դա հեքիաթ չէ, այլ ճշմարտություն: Մարդիկ ու ձիերը շատ փոքր են և նրանք ապրում են անձավներում...»

Սակայն մինչև 19-րդ դարը ոչ մի եվրոպացու չէր հաջողվել տեսնել գոնե մեկ պիգմեյի:

Պիգմեյները երկրագնդի ամենացածր մարդիկն են: Տղամարդիկ մեր 11 տարեկան երեխայի չափ են, բարձրությունը 140 սանտիմետրից չի անցնում: Կանայք ավելի ցածրահասակ են:

Պիգմեյներն ապրում են Հասարակածային Աֆրիկայի անտառներում, Կոնգոյի ավազանում և Իտուրի գետի ափերին: Զբաղվում են ձկնորսությամբ ու որսորդությամբ: Որսի են դուրս գալիս ամբողջ ցեղով: Տղամարդիկ միմյանցից հավասար հեռավորություն պահելով, երկար շղթա կազմած, առանց աղմուկի շարժվում են անտառով: Նրանցից հետո գնում են կանայք՝ երեխաները մեջքներին կապած: Հասնելով անտառի խորքը, առաջնորդի գլխավորությամբ նրանք մի մեծ կիսաշրջան են կազմում և աստիճանաբար սկսում փոքրացնել այդ շրջանը: Տղամարդիկ ցցերն ամրացնում են գետնին, իսկ կանայք ու երեխաները գոռում-գոչյունով ու փայտերը ծառերին խփելով որսը քշում են դեպի թակարդը: Այդ պահին իրենց խլացուցիչ ռռնոցն են սկսում շները: Կենդանիները փախչում և ընկնում են որսացանցը: Պիգմեյները թունավոր նիզակներով ու նետերով սպանում են վայրի ցուլերին և նույնիսկ փղերին: Թույնը իրենք են պատրաստում հատուկ բույսերից, որ աճում են Իտուրիի ափերին: Նրանց երբեմն էլ հաջողվում է վայրի մեղուների բուն գտնել և մեղր ունենալ: Սակայն լինում են ամիսներ, որ պիգմեյները որս չեն ճարում: Կանայք հողի տակից հանում են արմատներ, հավաքում են հատապտուղներ, գորտ, օձ, խեցգետին:



Որս գտնելու նպատակով նրանք մշտապես փոխում են իրենց ապրելատեղը: Պիգմեյները զարմանալի արագությամբ կառուցանում են պարաններով կամուրջ կապել գետերի վրա, որով անցնում է ամբողջ ցեղը: Ժամանակավոր բնակատեղերում նրանք ճյուղերից սարքում են կիսակլոր քողտիկներ և գիշերում այնտեղ: Հաճախ էլ իրենց առատ որսի մի մասը տանում են հարևան բանտու ցեղի գյուղը և փոխանակում բանանի, բանջարեղենի ու երկաթե նետածայրերի հետ:

Պիգմեյները առողջ և ամրակազմ մարդիկ են: Աֆրիկայում եղած գիտնականներից և ոչ մեկը նրանց մոտ որևէ հիվանդություն չի հայտնաբերել:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

*Ճավա կղզին հայտնի է իր հրաբուխներով: Պանգրանգո հրաբխի վրա աճում է մի հետաքրքիր բույս, որը ծաղկում է միայն այն ժամանակ, երբ հրաբուխը պետք է ժայթքի: Այս երևույթը նկատել են տեղի բնակիչները և ուշի-ուշով հետևում են այդ բույսի ծաղկելուն: Երբ հայտնվում են առաջին ծաղիկները, մոտակա վայրերի բնակիչները հեռանում են բնակավայրերից:*

*Գիտնականները պարզել են, որ գորտի շնչառական օրգանները արտակարգ զգայուն են մթնոլորտի ճնշման փոփոխությունների նկատմամբ: Այդ փոփոխությունները նրանք արտահայտում են տարբեր կռկռոցներով: Որոշ գիտնականներ այժմ ուսումնասիրում են գորտերի կռկռոցների տարատեսակները, որպեսզի կանխագուշակեն եղանակը: Ենթադրում են, որ գորտերի միջոցով հնարավոր կլինի ավելի ճիշտ կանխագուշակել եղանակը:*

# ԻՆՉ ԵՆ ՊԱՏՄՈՒՄ ԼԵՌՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

ԳՐԻԳՈՐ ԱՎԱԳՅԱՆ
(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

Բոլոր մայր ցամաքներում կան տարբեր ուղղությամբ ձգվող բարձրաբերձ և լայնանիստ լեռներ ու լեռնաշղթաներ։ Դրանք էլ մարդկանց նման ունեն իրենց անունները։ Իսկ ինչպե՞ս են առաջացել այդ անունները։

Մարդիկ լեռներին տվել են անուններ, որպեսզի տարբերեն իրարից։ Կան երկրներ, որտեղ լեռները կրում են այդ երկրի բնակչության կողմից պաշտած աստվածների, նրանց թագավորների, ժողովրդական հերոսների անուններ։ Շատ լեռներ կոչվում են իրենց անմատչելի գագաթները բարձրացողների անուններով։ Հաճախ մարդիկ լեռներին տվել են նրանց արտաքին տեսքը կամ հարըստությունը բնութագրող անուններ։ Բազմաթիվ են նաև այն լեռները, որոնք կոչվում են իրենց ուսումնասիրողների անուններով։

Ահա դրանցից մի քանիսը։

Արևելյան Սիբիրը կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով մինչև անցած դարի վերջերը մնացել էր չուսումնասիրված և քարտեզների վրա նշվում էր սպիտակ բծերով։ Երբ Իվան Դեմենտևիչ Չերսկին իր խմբով ուսումնասիրեց այդ կուսական ու դաժան վայրերը, քարտեզի վրայի սպիտակ բծերը փոխարինվեցին մակերևույթի իրական պատկերն արտահայտող պայմանական նշաններով։ Եվ որպես հատուցում նրա ծառայությունների, Արևելյան Սիբիրի հզոր լեռնաշղթաներից մեկը կոչվեց Չերսկու անունով։

Պատմությանը հայտնի է նաև հակառակը։ Երբեմն ուսումնասիրողին տրվել է իր ուսումնասիրած լեռան անունը։ Անվանի աշխարհագետ Սեմյոնովը արիաբար հաղթահարելով Տյան-Շանի բնության ահեղ դժվարությունները, բավական մանրամասնությամբ ուսումնասիրել է աշխարհի այդ մեծագույն լեռնաշղթաներից մեկը և գրել նրա ծագման պատմությունը։ Դրա համար նա կոչվեց Սեմյոնով-Տյան-Շանսկի։

Այժմ նայենք աշխարհի քարտեզին և տեսնենք, թե ուրիշ աշխարհամասերում ու երկրներում ինչ խոշոր լեռներ կան և ինչպիսի անուններ ունեն դրանք։

Դիտենք արևմտյան կիսագնդի քարտեզը։ Ամերիկա մայր ցամաքի արևմտյան մասով, սկսած Ալյասկա թերակղզուց, մինչև Հրո երկրի ծայրամասում գտնվող Հորն հրվանդանը, ձգվում է մի հսկայական լեռնաշղթա՝ բազմաթիվ լեռնաբազուկներով ու ճյուղավորություններով։ Դա երկրագնդի ամենաերկար լեռնաշղթան է, որն ունի 15 հազար կիլոմետր ձգվածություն։ Այդ լեռնաշղթային իսպանացիները տվել են Կորդիլյերներ անունը, որ հայերեն կլինի՝ ուղղաձիգ լեռների շղթա։

Այժմ դիտենք Ասիա աշխարհամասի կենտրոնական շրջանը։ Եթե Ամերիկայում է գտնվում երկրագնդի ամենաերկար լեռնաշղթան՝ Կորդիլյերները, ապա Ասիայում է գտնվում ամենահզոր լեռնազանգվածը՝ Տիբեթը։ Ըստ չինական ավանդության, Ասիայի կենտրոնում աշտարակածև բարձրացող լեռների այդ կուտակումը շատ հին ժամանակներում պոկվել է ինչ-որ մոլորակից և ընկել Ասիայի վրա։ Դրա համար էլ չինացիները Տիբեթի լեռներին կոչում են «Երկնային լեռներ», իսկ իրենց՝ երկնային զավակներ։ Իհարկե, այդ բոլորը զուրկ են գիտական հիմքից։

Տիբեթի լեռնաշխարհի հարավային մասով, հզոր պատնեշի նման, ձգվում է Հիմալայան լեռնաշղթան։ Եթե Տիբեթը երկրագնդի ամենահզոր լեռնաշխարհն է, ապա Հիմալայները՝ ամենաբարձր լեռնաշղթան։ Նրա երկարությունը հասնում է մոտ 2500, իսկ լայնությունը՝ 250—300 կիլոմետրի, միջին բարձրությունը կազմում է 6000 մետր։ Այդպիսի երկնաքերձ բարձրության հետևանքով Հիմալայները պատած են հավերժական ձյունով։ Այդտեղից էլ առաջացել է նրա անունը՝ Հիմալայ, որ սանսկրիտական, այսինքն հին հնդկական, լեզվով նշանակում է ձյունաշխարհ, ձյունապատ երկիր։

Հիմալայան լեռներում է գտնվում երկրագնդի ամենաբարձր գագաթը՝ Ջոմոլունգման, որը ծովի մակերևույթից 9 կիլոմետր բարձր է։ Միշտ ամպերի մեջ թաղված Ջոմոլունգմայի գագաթից

դեպի ներքև են ձգվում հսկա սառցադաշտեր, որոնց վերջավորությունից սկիզբ են առնում սառնորակ գետակներ։ Մարդիկ երբեմն փորձել են բարձրանալ նրա՝ ամպերի մեջ թաղված, ձյունաթագ գագաթը, բայց մեծ մասամբ անհաջողությամբ են ավարտել այդ համարձակ փորձերը։ Նրանք վերադարձել են կես ճամփից՝ չդիմանալով ամպամած բարձրությունների բնության դաժանություններին։ Միայն 1953 թվականի մայիսի 29-ին Ջոն Խանտի անգլիական էքսպեդիցիայի անդամներին՝ Նեպալցի Թենսինգին և Նորզելանդացի Խիլլարին հաջողվեց ոտք դնել Ջոմոլունգմայի կուսական գագաթի վրա։

Երկրագնդի այդ ամենաբարձր լեռը իր հպարտ ու երկնասլաց վեհությամբ շատերին է գրավել, և քիչ չեն եղել մահկանացու փառասերներ, որոնք ցանկացել են իրենց անունով կոչել լեռների արքային ու դրանով մտնել անմահների շարքը։

Անմահանալու փառասիրական մոլուցքով տարված անգլիացի Ջորջ Էվերեստը, որը 19-րդ դարի առաջին կեսում Հնդկաստանի երկրաբանական կոմիտեի պրեզիդենտն էր, իր անունով կոչեց լեռների արքային, ինչպես սովորաբար անում են տիրողները իրենց ենթակա երկրներում։ Եվ մոտ մեկ դար երկրագնդի այդ ամենաբարձր լեռը կրում էր Էվերեստ անունը։ Սակայն անկախություն ձեռք բերելուց հետո Հնդկաստանը այն վերանվանեց իր հայրենական անունով՝ Ջոմոլունգմա։

Այժմ մոտենանք Աֆրիկայի ֆիզիկական քարտեզին։ Այստեղ ամենաբարձր լեռները հիմնականում ձգվում են մայր ցամաքի արևմտյան երկայնքով։ Աֆրիկա մայր ցամաքի ամենաբարձր լեռը Կիլիմանջարոն է, որը գտնվում է հասարակածի վրա, Վիկտորիա լճի հարավ-արևելյան մասում և ունի ավելի քան 6000 մետր բարձրություն։ Հավերժական ձյունով ծածկված գագաթի վրա ապաստան են գտնում քամիների կողմից քշվող տեղումնաբեր ամպերը։

Պատկերացնու՞մ եք, Կիլիմանջարոն գտնվում է հավերժական ամռան գոտում։ Այստեղ ամբողջ տարին ամառ է, ծառերը միշտ կանաչ են, մի ծառի վրա ծաղիկ է, մյուսի վրա՝ հասուն պտուղ։ Եվ ահա այս հավերժական ամռան գոտում, որտեղ ջերմաստիճանը 25-ից երբեք չի իջնում, դեպի երկինք խոյացած Կիլիմանջարոյի գագաթին հավերժ սառնամանիք է։ Դրա պատճառը պարզ է, վերև բարձրանալով օդի ջերմաստիճանը յուրաքանչյուր 1000 մետրի վրա 5—6 աստիճանով իջնում է։ Եթե լեռան ստորոտում օդի ջերմաստիճանը +20 է, ապա նրա գագաթին կլինի մոտավորապես -10 աստիճան սառնամանիք։ Ձմռանը մեր գոտու համար այդպիսի ջերմաստիճանը սովորական է, մինչդեռ հասարակածային գոտում դա դիտվում է որպես արտակարգ, արտասովոր երևույթ։

Ահա թե ինչու աֆրիկացիները կանաչ օվկիանոսի մեջ միայնակ վեր խոյացող ձյունագագաթ Կիլիմանջարոն համարում են սառնամանիքի, ցրտության աստված։ Տեղական ժողովուրդներից մեկի՝ սուախիլիների լեզվով, կիլիմա նշանակում է լեռ, նջարո՝ աստված, որ բերում է սառնամանիք, այլ կերպ ասած, Կիլիմանջարո անունը հայերեն թարգմանելով ստացվում է ցրտաբեր աստծու լեռ։

Երկրագնդի վրա շատ ու շատ լեռներ կան, որոնցից գրեթե ամեն մեկն ունի հետաքրքիր անուն, բայց այդ բոլորի մասին մի այսպիսի հոդվածում պատմել հնարավոր չէ։ Ուրեմն, եկեք այս անգամ բավարարվենք այսքանով։

Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԻՅԱՆԻ






Աշխարհագրության դասից առաջ, մեծ դասամիջոցին, Գագիկն հանկարծ հարցրեց.

— Ո՞վ կարող է ասել, քանի՞ աշխարհամաս կա։

— Հինգ, առանց Անտարկտիդայի։

— Իսկ ինչո՞ւ «առանց»․ Անտարկտիդան էլ է աշխարհամաս։

— Աշխարհամաս է, բայց անմարդաբնակ։

— Հետո ի՞նչ, այնտեղ հիմա շատ մարդիկ են բնակվում, գիտնականներ։

— Դա հաշիվ չի, անմարդաբնակ է,— իրենն էր պնդում Գուրգենը։

— Լավ, Անտարկտիդայի մասին հայտնի է, իսկ գիտե՞ք, որ եղել է նաև մի ուրիշ աշխարհամաս։

— Ի՞նչ է նշանակում «եղել է»,—ասաց Արամը,— որ եղած լիներ, հիմա էլ կլիներ։

— Երևի թռել է Լուսին,— ծաղրեց Գուրգենը։

— Կամ իջել է ծովի հատակը։

— Այո՛, հենց ծովի տակ է անցել,— անվրդով ասաց Գագիկը։

Նրա հանգիստ տոնը ստիպեց երեխաներին լռջանալ։

— Այդ ի՞նչ աշխարհամաս է որ։

— Ե՞րբ է սուզվել,— վրա տվեցին նրանք։

— Այդ աշխարհամասը Ատլանտիդա է կոչվում, բայց ես շատ բան չգիտեմ նրա մասին։

— Եկեք հարցնենք ընկեր Վիրաբյանին,— առաջարկեց Լևոնը։

Եվ նա ժամանակին այդ ասաց, որովհետև զանգն արդեն խփել էր և ընկեր Վիրաբյանը մտնում էր դասարան։

Ընկեր Վիրաբյանը դասի վերջում ահա թե ինչ պատմեց Ատլանտիդայի մասին։

— Ատլանտիդան առաջին անգամ հիշատակվել է հույն փիլիսոփա Պլատոնի աշխատություններում։ Պլատոնը նկարագրել է այդ աշխարհամասի աշխարհագրական դիրքը, նրա բուսականությունը, հանքային հարստությունները և այլն։ Այսպես մանրամասն նկարագրել է Պլատոնը, սակայն նրա նկարագրության համար գիտական հիմք չի եղել, ավելի ճիշտ, նրա պատմությունը հենվել է ավանդության վրա։ Ահա այդ է պատճառը, որ արդեն ավելի քան երկու հազար տարի է ամբողջ աշխարհի գիտնականները աշխատում են լուծել Ատլանտիդայի առեղծվածը։ Գիտնականները միշտ էլ բաժանվել են երկու մասի։ Մի մասը պնդել է, թե Պլատոնի Ատլանտիդան հնարած մի աշխարհամաս է, որ այդքան մեծ մի կղզի օվկիանոսի հատակն անցնելիս պետք է որոշակի հետքեր թողներ և չէր կարող այդպես անհետ կորչել։

Գիտնականներից շատերն էլ, ընդհակառակը, պնդում են, որ առանց իրական փաստի չէր կարող այդպիսի ավանդություն լինել։ Նրանք բե-

## ՀՍԿԻՉ-ԱՂԱՎՆԻՆԵՐԸ

Սան-Ֆրանցիսկոյի բժիշկներից մեկը՝ Թոմ Վերխեր, որոշեց սուր տեսողություն ունեցող աղավնիներին օգտագործել... դեղագործական գործարանում որպես հսկիչներ։ Նկատելով, որ դեղապատիճները և դեղահատերը իրենց չափերով կամ գույներով տարբերվում են իրենց սահմանված չափսից, աղավնիները դեն են նետում դրանք։ Աղավնիների այս առանձնահատկությունը նույն նպատակին է օգտագործում հարավ-աֆրիկյան դեղագործական մի ֆիրմա, որը եկել է այն եզրակացության, թե աղավնիներն ավելի էժան են նստում սովորական հսկիչներից։

րում են նույնանման ավանդություններ ուրիշ ժողովուրդներից և, համեմատելով իրար, տեսնում են, որ դրանք մի ընդհանուր ճշմարտություն ունեն իրենց խորքում:

Այժմ գիտնականներն ավելի շատ համոզիչ փաստեր ունեն իրենց ձեռքում և արդեն կասկած չի մնում, որ իրոք այժմյան Ատլանտյան օվկիանոսում եղել է մի շատ մեծ կղզի, որը հազարամյակներ առաջ կործանվել է ու անցել ջրի տակ: Ահա այդ է պատճառը, որ ատլանտաբանները համառ կերպով շարունակում են կորած աշխարհամասի որոնումները: Շատերը Արևելքի և Ամերիկայի հին կուլտուրաների մեջ որոշ նմանություն են տեսնում և դա համարում են իրենց հայացքների հաստատող ապացույց:

Օրինակ, այդ ինչպե՞ս է, որ միատեսակ բուրգեր են կառուցել և՛ Եգիպտոսում, և՛ Ամերիկայում, որ Արևին ու Լուսնին նվիրված մեծ բուրգերը երկու տեղում էլ շրջապատված են դամբարաններով: Այդ ինչպե՞ս է, որ տարբեր աշխարհամասի վրա՝ Եգիպտոսում ու Ամերիկայում միատեսակ, ճշգրիտ օրացույցներ են մշակվել: Ե՛վ եգիպտացիների, և՛ մյուս ժողովրդի մոտ տարին բաժանված էր 12 ամսի ու լրացուցիչ օրերի:

Ատլանտաբանները գտնում են, որ Արևին երկրպագելը, նրան որպես աստվածության ընդունելն էլ Արևելքին և Ամերիկային է անցել Ատլանտիդայից: Նույն պատճառով է, որ հին Մեքսիկայում օձ-կին- աստվածուհի կար և այդպիսի աստվածուհի էլ կար նաև Եգիպտոսի Հյուսիսային թագավորության մեջ: Զարմանալի է նաև, որ իր ուսերի վրա երկնակամարը պահող կիսաստված Ատլանտի հին հունական պատկերումը կրկնվում է Եգիպտոսում և Ամերիկայում: Բացի այդ կարգի նմանություններից, ատլանտաբանները ուրիշ շատ փաստեր են բերում:

Բայց կա՞ն արդյոք ապացույցներ այնտեղ, ուր պետք է որ եղած լիներ Ատլանտիդան, այսինքն՝ Ատլանտյան օվկիանոսում:

Դեռևս 1926 և 1927 թվականներին «Մետեոր» հետախուզանավը ձայնախորաչափի միջոցով օվկիանոսի հատակում տասնյակ հազարավոր չափումներ է կատարել, իսկ այժմ օգտվելով ուլտրահնչյունային ալիքներից, թղթի վրա մանրամասն կերպով գրանցում են օվկիանոսի հատակի կառուցվածքը: Այդպիսի չափումների հետևանքով պարզվեց, որ Ատլանտյան օվկիանոսի հատակի ամբողջ միջին մասն զբաղված է ստորջրյա լեռնաշղթայով: Այդ լեռներից ժամանակակից միջոցներով ապառներ վերցնելով և ուսումնասիրելով, գիտնականները եկել են այն եզրակացության, որ դրանք ձևավորվել են օդում: Բացի այդ, գտնվել են նաև մանգանի կտորներ, որի գոյությունն ասում է այն մասին, որ ժամանակին այդ վայրը գետի ջրի տակ է գտնվել, որի մեջ լուծված վիճակում մանգան է եղել: Ապացուցվել է, որ ստորջրյա Ատլանտյան լեռնաշղթայի հյուսիսային մասը և ստորջրյա Ազորյան սարահարթը հովիտներ ունեն, իսկ դա ասում է այն մասին, որ դրանք ժամանակին վերջրյա են եղել:

Այսպիսի շատ ապացույցներ կան, երեխաներ, որոնց մասին պատմելու համար շատ ժամանակ է պետք: Ավելի լավ կլինի, որ դուք կարդաք Եկատերինա Անդրեևայի «Կորուսյալ աշխարհի որոնումները» գիրքը, որը նվիրված է Ատլանտիդա աշխարհամասի որոնումներին:

ԱՂԱՎՆԻ ՄԱՆԱՍՅԱՆ

## ՄԵՐ ԿԱՆԻՈՆՆԵՐԸ

Լեռնային երկրներում ամենուրեք հանդիպում են տարբեր խորության կիրճեր, որոնք հոսող ջրի դարավոր աշխատանքի արդյունքն են: Երբ գետից որևէ ամանով ջուր ենք վերցնում, հաճախ նրա մեջ տեսնում ենք ավազի հատիկներ, մանր քարակտորներ, տիղմ: Թվում է, թե դա աննշան քանակ է, որ ջուրն իր հետ տանում է: Հապա հաշվեք, թե գետը տարեկան որքան տիղմ ու ավազ է տանում իր հետ, և ստացած քանակը բազմապատկեք հարյուր հազարավոր տարիների հետ: Այսպես միլիոնավոր տարիների ընթացքում հոսող ջրերը կտրում, ողողում են երկրի մակերևույթը և ստեղծում անդնդախոր կիրճեր:

Կիրճերն ամենուրեք միմյանց նման չեն. նրանց մի տեսակը կոչվում է կանիոն, որը շատ յուրահատուկ է Հայաստանի հրաբխային շրջաններին: Կանիոնները ստեղծվում են հրաբխային հարթ պլատոների մեջ, որտեղ հարթությունից միանգամից անցում է կատարվում հովտին զառիթափ, ուղղաձիգ քարափներով: Հայաստանում կանիոնների խորությունը հասնում է մի քանի հարյուր մետրի: Այդպիսիներից են Դեբեդի, Ձորագետի, Ախուրյանի, Քասաղի, Հրազդանի, Ազատի, Արփայի, Որոտանի կանիոնները: Աշխարհի ամենախոշոր կանիոնը Կոլորադո գետի կանիոնն է (Հյուսիսային Ամերիկա), որի խորությունը հասնում է 1800 մետրի:



# ԱՏԼԱՆՏԻԴԱՆ ՈՒԶՈՒՄ Է ԻՄԱՆԱԼ՝ ԱՐԴՅՈ՞Ք ԾՈՎԻՑ ԱՅՆ ԿՈՂՄ ԵՐԿԻՐ ՉԿԱ։

(Հատված «Ատլանտիդա» վեպից)

ՎԼԱԴԻՄԻՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ՌԱՖԻԿ ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Վայրէջքը վերջացավ։ Ատլանտիդան, Ֆարրոսն ու Տալինան իջան ծովափ։ Նրանց դեմ բացվեց ծովային մուգ կանաչ հարթությունը։ Այնտեղ ջրագռավները կատվի պես խաղում էին որսած ձկնիկների հետ։ Երևի նրանց էր ուզում նմանվել ջրասամույրը, որ կտուցից բաց թողեց ձկնիկը, հետևից շտապ սուզվեց ջուրն ու, դատարկ դուրս գալով, ահագին աղմուկ բարձրացրեց։ Ծովի վրա անթիվ-անհամար ջրիմուռներ էին աճել, որոնք երբեմն տեղ-տեղ տարուբերվում էին, մասնելով իրենց մեջ թաքնված թանասրաձկանը։ Տալինան, որ երբեք չէր տեսել ծովն այդպես կանաչ, նայում էր ուշադիր ու, համկարծ երկու մատը տանելով դեպի շրթունքները, զարմանքի ճիչ արձակեց.

— Նայեցե՛ք, նայեցե՛ք, մարդը կռվո՜ւմ է...

Ֆարրոսն ու Ատլանտիդան միաժամանակ տեսան, որ այնտեղ, ուր սկսվում է ջրիմուռների պատնեշը, մի լաստ խրվել է նրանց մեջ։ Նավորդը թիակը ձեռքին համառորեն կռվում էր ինչ-որ ծովային հրեշների դեմ։ Նրանք շտապ իջան ծովափ ու պարզ տեսան նավորդին։ Նա մի պատանի էր՝ բարձրահասակ, մազերը կապած լիանայի թելով, որի վրա ծաղիկներ կային։

— Պլա՜տը,— կանչեց Ատլանտիդան։

Լաստը լիքն էր մանր ձկներով։ Անճոռնի ծովագայլերը փորձում էին սողալ լաստի վրա ու խլել ձկները։ Պլատը թիակով խփում էր նրանց կարճլիկ լողաթաթերին։ Նրանք գլուխները ցցում էին վեր, բացում ատամները, շարժում երկար բեղերը, աչքերը կկոցում ու պոչի վրա սուզվում ջուրը։ Այդ ժամանակ լաստի մյուս կողմից փորձում էին բարձրանալ ութիչները։

— Ծովագայլերը կուտեն նրան,— սարսափով ասաց Տալինան։

— Ո՜ւ-ո՜ւ-ո՜ւ,— դեպի ձկնորսը բարձր կանչեց Ֆարրոսը։ Պլատը մի պահ ետ նայեց, տեսավ ափին կանգնածներին։

— Ո՜ւ-ո՜ւ-ո՜ւ,— իր հերթին ձայնեց նա ու շարունակեց կռիվը։

— Տո՛ւր նրանց քո ձկները, բարի՛ Պլատ։ Եթե լաստի վրա այլևս ձուկ չմնա, նրանք քեզ հանգիստ կթողնեն,— տագնապով կանչեց Ատլանտիդան։

— Չե՛մ տա,— պատասխանեց Պլատը,— այս ձկները ե՛ս եմ որսացել, ինչո՞ւ տամ անճոռնի ծովագայլերին։

Ատլանտիդան հայացքով չափեց տարածությունը, նայեց ջրիմուռներին, ասաց.

— Բարի՛ Ֆարրոս, որքա՞ն խորություն ունեն այս ջրիմուռները։

— Պատահում է քսան նիզակաչափ։

— Տեսնո՞ւմ ես, թե ինչպես նրանք իրենց վրա պահել են մեծ քարը։ Մարդու ծանրության տակ

չեն ծովի։ Դուցե կարողանանք օգնություն գտնել։

— Ջրիմուռները չեն ծակում, բարի՛ Աստղանտիպա, բայց կառչեն։ Շատ խարդախ են։ Եթե նրանց վրայով երկու քայլ առաջ գնաս, այլևս ո՛չ կարող ես վերադառնալ, ո՛չ շարունակել ճանապարհը։

Աստղանտիպան շփոթված աջ ու ձախ էր նայում։ Նա ուզում էր թևեր առնել, թռչել Պյատի մոտ։ Ֆարրոսը զարմացած նայում էր։ Նա չէր պատկերացնում, որ երբևէ Աստղանտիպան էլ կարող է շփոթվել ու տագնապի մատնվել։

— Ես ի՞նչ անեմ,— շշնջում էր խեղճ աղջիկը,— ես ինչպե՞ս օգնեմ նրան։ Մի բան մտածիր, բարի՛ Ֆարրոս...

Այդ ժամանակ Պյատը շատ ճարպիկ ձևով եռաժանին խրեց ծովագայլերից մեկի ծոծրակը։ Հրեշը ծղրտաց, ուզեց փախչել, իր հետ քաշեց լաստն ու դուրս բերեց ջրիմուռների պատնեշից։ Պյատը հարմար պահին իր եղեգնյա դանակով կտրեց եռաժանին լաստին կապող պարանը։ Ծովագայլը փախավ, իր հետ տանելով եռաժանին, իսկ Պյատը սկսեց լաստը վարել դեպի ջրիմուռներից ազատ ափը։ Աստղանտիպան, Տայինան ու Ֆարրոսը շտապեցին նրա մոտ։ Պյատի աչքերը փայլում էին խիզախումից ու հաղթանակի ուրախությունից։

— Դու շատ հնարամիտ ես,— երբ մոտեցան, ասաց Ֆարրոսը,— պատմի՛ր, թե ինչպես ընկար այս ջրիմուռները։

— Ես չնկատեցի, որ ընկնում եմ ջրիմուռները,— պատասխանեց պատանին, անվերջ ժպտալով Աստղանտիպային,— ես զբաղված էի որսով։ Հանկարծ տեսա ծովագայլերին։ Դրանք ջրից դուրս ցցած, հարձակվեցին ինձ վրա։ Ես կռվում էի նրանց հետ, իսկ նրանք ինձ քշեցին դեպի ջրիմուռները։ Երևի լավ գիտեն, որ այստեղ ավելի հեշտ կարելի է խլել ձուկը։

— Ասա՛ ինձ, բարի՛ Պյատ,— խոսեց Տայինան,— մի՞թե դո՛ւ չես համայնքի ամենաքաջ ձկնորսը։

— Չէ՛, բարի՛ Տայինա, Կանուն ավելի ճարպիկ է։ Նա կարող է նետվել ջուրը և դանակահարել ամենամեծ ձկներին։ Իսկ ես դեռ չեմ կարողանում։

Նա այնպես տխուր նայեց Աստղանտիպային, կարծես մեղավոր է, որ դեռ չի կարողանում ծովի մեջ մեծ ձկների դանակահարել։

— Բարի՛ Պյատ,— ասաց Աստղանտիպան,— պատմի՛ր, թե ինչ ես տեսնում ծովում, երբ լողում ես շատ ու շատ հեռու։

Պյատն ուրախացավ, որ Աստղանտիպայի պես իմաստունն ուզում է իրենից բան սովորել, աչքերը լայն բացվեցին, լարվեց ու սկսեց.

— Ծովը մե՜ծ-մեծ է։ Մի ծայրն այստեղ է, իսկ մյուսը գնում հասնում է արևին...

Արևը թեքվել էր ծովի վրա ու կարմրին էր տալիս։

— Ամեն գիշեր արևն այնտեղ է քնում։ Ասում են, նա շատ գեղեցիկ աղջիկ է, ինչպես չքնաղ Աստղանտիպան։ Նա միշտ բարություն է անում մարդկանց։ Նա ծովի մեջ մեծ տուն ունի։ Հենց որ գնում է տուն, կարմրաթևիկները լող են տալիս, հասնում նրա մոտ։ Արևը շատ է սիրում այդ ձկներին։ Ամեն մեկին գրկում, համբուրում է։ Դրա համար էլ նրանք կարմրաթևիկ են։ Եթե մեկն ու մեկը նրանց որսա, արևը խիստ կբարկանա, ծովը կփոթորկի։ Մի անգամ ես այդպիսի երկու ձկնիկ բռնեցի, երեք օր փոթորիկ եղավ։

— Ես ուզում եմ տեսնել այդ ձկներին, բարի՛ Ֆարրոս,— անհամբերությամբ ասաց Տայինան։

— Չի՛ կարելի նրանց ափ հանել,— բացատրեց



Գլատը,— Նրանք կխեղդվեն։— Ապա խորը շունչ քաշեց ու շարունակեց.— Մի անգամ ես ուզեցի գնալ արևի տունը, որ տեսնեմ, թե նա քնած ժամանակ էլ լույս տալի՞ս է։ Իմ լաստով լողացի կարմրաթևիկների հետևից։ Նրանք այնքան շատ էին, որ ծովը կարմրել էր։ Ես շատ հեռացա ափից ու գիշերը մնացի ծովում։

— Հետո՞,— հետաքրքրվեց Ատլանտիդան,— այնտեղ ոչինչ չտեսա՞ր։

— Մի մե՜ծ ափ տեսա, բարի՛ Ատլանտիդա,— շարունակեց Գլատը,— այնտեղ մեծ անտառներ էին երևում։ Երևի դա հենց արևի տունն էր։ Ես թիավարեցի դեպի ափը։ Քանի մոտենում էի, ափը փոքրանում էր։ Հետո կարծեցի, թե դա մեծ ժայռ է։ Ավելի մոտեցա։ Ժայռն էլ փոքրացավ, ա՛յ այսքան...

Նա ավազի վրա մի լաստաչափ գիծ քաշեց, ցույց տալու համար, թե ժայռն ինչքան է փոքրացել։ Ատլանտիդան հետաքրքրությամբ լսում էր։ Իսկ Տալինան մնացել էր շվար, թե ինչպես կարող է մեծ երկիրն այդքան փոքրանալ։ Գլատն էլ դեմքի ապշած արտահայտություն ուներ։ Երևի նա մինչև այսօր զարմանում էր տեսածի վրա։

— Հետո՞, բարի՛ Գլատ, դու մոտեցա՞ր այդ ժայռին,— հարցրեց Ատլանտիդան։



— Մոտեցա, ազնի՛վ Ատլանտիդա, մոտեցա, թիակով էլ խփեցի։ Դա սառցած խոյադելֆինի մարմին էր, որից ես մի քիչ կերա։ Հետո վտառով մեծ-մեծ ձկներ երևացին, նրան լափեցին, ես հազիվ փախա։

Բոլորը զարմանքով նայեցին իրար։ Ֆաբրոսը կասկածանքով ուսերը ցնցեց։

— Չե՞ք հավատում,— անկեղծորեն վշտացավ Գլատը,— եկեք գնանք միասին։ Կարմրաթևիկները մեզ կառաջնորդեն այնտեղ։ Ես հաստատ գիտեմ, դա արևի տունն էր։ Բայց նա չուզեց, որ ես իր տունը տեսնեմ, դրա համար էլ չքացավ, տեղը սառցած խոյադելֆին թողեց։ Ես հոգնած էի ու քաղցած։ Շարունակեցի հետևել կարմրաթևիկներին ու ափ հասա։

— Դա ի՞նչ ափ էր։

— Մեր ափը, բարի՛ Ատլանտիդա։ Կարմրաթևիկները գիշերը գնում են արևի տունը, առավոտյան վերադառնում են մեր ափը։

— Ես ուզում եմ իմանալ՝ արդյո՞ք ծովի հեռվում ուրիշ ցամաք չկա, որտեղ այնպիսի մարդիկ ապրեն, ինչպիսին մենք ենք։

Գլատն այնպես զարմացավ, որ աչքերը չռվեցին։ Նա երբեք չէր մտածել, որ աշխարհում ուրիշ ցամաք լինի և ճիշտ իրենց նման մարդիկ։

— Մեծ է ծովը, Գլա՛տ,— շարունակեց Ատլանտիդան,— մեզ դեռ անհայտ են նրա գաղտնիքները։ Ի՞նչ իմանաս, այս քարանձավը մարդու ձեռքով կառուցված մի մեծ պալատ չի՞ եղել։ Գուցե այստեղ ապրել են մարդիկ, որոնք կարողացել են գնալ մինչև արևի տունը ու խնջույքի են նստել արևի հետ։ Ի՞նչ իմանաս, չկա՞ մի ուրիշ երկիր, որտեղ մեզ նման մարդիկ լինեն։ Սիրտս ասում է, որ կա այդպիսի երկիր։

— Բարի՛ Ատլանտիդա,— ասաց Գլատը,— ես կգնամ մինչև արևը, ես կիմանամ՝ կա՞ արդյոք աշխարհում մի ուրիշ երկիր, եթե դու...

— Այո՛, քա՛ջ Գլատ։

— Եթե խոստանաս ինձ ամուսին ընտրել։

Ասաց ու ժպտաց այնպես, կարծես շատ մեծ բան չէր ասել։ Մինչդեռ պատրաստ էր նրա համար գնալ ու հասնել արևի տունը։

— Քա՛ջ Գլատ,— վճռեց Ատլանտիդան,— լողա մինչև արևը և բե՛ր ինձ այդ լուրը։ Բայց լսի՛ր խորհուրդս։ Քեզ ընկե՛ր վերցրու ատլանտներից ամենաքաջերին։ Սովորի՛ր փոթորկի մեջ լողալ, սովորի՛ր արևով ու աստղերով որոշել վերադարձիդ ճամփան։ Կարո՞ղ ես։

— Չե՛մ կարող, բարի՛ Ատլանտիդա։ Աստղերն այնպես անդադար են։ Նրանք իրենց տեղում չեն մնում։ Ես կհետևեմ ձկներին ու որորներին։ Ձկնորսներն ինձ սովորեցրել են հասկանալ թռչունների թռիչքի ուղղությունը։ Մնաս բարով, Ատլանտի՛դա։ Գնա՛ մի եգիպտացորենի հատիկ գցիր հողը։ Մինչև կողրեր տա ու մինչև դա քաղելու ժամանակը, ես կվերադառնամ։

Գլատը ցատկեց լաստի մեջ ու աշխույժ թիավարելով հեռացավ։

* * *

Եգիպտացորենը ծլեց ու մեծանում էր։ Ամեն օր Ատլանտիդան նայում էր, ջրում։ Այդ փոքրիկ հատիկը դարձել էր կենաց ու մխիթարության ծառ։ Ատլանտիդան կարոտի ժամին նստում էր կողքին ու զրուցում հետը.

— Իմ պարզամի՛տ, իմ քա՛ջ Գլատ, հիմա որտե՞ղ ես հասել։ Ես ինչպե՞ս իմանամ քո մասին։ Արդյոք հասկացա՞ր, որ արևաղջիկը շատ հեռու է։ Ծովը քեզ նոր բացության կմղի, տարերքն ու փորձությունները կհմտացնեն։ Դու կխելոքանաս։ Բայց քո պարզության մեջ ինձ համար ավելի էիր իմաստուն։

— Բարի՛ Ատլանտիդա,— ասում էր Ֆաբրոսը,— ատլանտներն ապրում են երջանիկ։ Ոչ մի հոգս չունեն։ Ամենքի ունեցածը մեկինն է, մեկի ունեցածը՝ ամենքինը։ Ինչո՞ւ դու էլ ոչ մի բանով չես ուրախանում։

*— Ես ուրախանում եմ նրանով, որ քաջ հեռավոր ունեմ, ազնի՛վ Ֆարբոս։*

*Ու ժպտում էր Ատլանտիդան սիրուց ու կարոտից։*

*Մի անգամ Ատլանտիդան թափառում էր ծովափին ու երազում իր պարզամիտ, իր քաջ Պլատին։ Նա լսեց երգի ձայն ու մոտեցավ։ Մի ծառի տակ նստած էր ծերունի Յանոսը, իր անբաժան նվագարանով։ Երեխաները շրջապատել էին նրան։ Յանոսը երգում էր ու հեքիաթ ասում.*

*— Կա մի հեռավոր երկիր։ Այնտեղ է բնում Արև-աղջիկը։ Նրան հսկում են չար մարդիկ։ Երբ Արևը գալիս է տուն, կապում են նրան, որ միայն իրենց լույս տա։ Գիշերը Արևը մնում է շղթայված։ Մինչև լույս նա կրակ է արձակում, լուսաբացին այրում է կապանքներն ու կրկին բարձրանում երկինք, որ իր լույսից ու ջերմությունից մեզ էլ բաժին հանի։*

*Գնաց բարի Պլատը, որ սպանի չար մարդկանց, քանդի արևի կապանքները, որ նա միշտ հաստատ մնա երկնքում։ Ճանապարհին նրան խեղդել ուզեցին ծովահրեշները։ Պլատը կռվեց, հաղթեց։ Նրան երկնքից օգնում էր Արև-աղջիկը։ Երբ հասավ ջրասարին, նավը կուլ գնաց ալիքներին. քաջ Պլատը լողալով անցավ ջրասարը ու հասավ Արևի տունը։*

*— Ե՞րբ կգա բարի Պլատը,— հարցրեց մի երեխա։*

*— Երբ արևի բոլոր կապանքները քանդի, երբ այլևս գիշեր չլինի, Պլատը կվերադառնա։*

*— Այդ ի՞նչ ես պատմում, Յանո՛ս,— հարցրեց Ատլանտիդան։*

*— Քաջ Պլատի հեքիաթը, իմաստո՛ւն Ատլանտիդա,— պատասխանեց Յանոսը։*

# ԱՆՄՈՌԱՑ ՔԱՐԱՅՐՆԵՐ

Հայաստանի բնության հուշարձանների մեջ առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում քարայրները։ Եկեք ծանոթանանք դրանցից մի քանիսի հետ։

Զառնին գտնվում է Լոռիում։ Այս քարայրն իր անունն ստացել է Հաղպատի իշխան Զարեհից։ Նա իր 500 քաջերով այստեղ է ապաստանել և կռվել օտարերկրյա զավթիչների դեմ, որոնք ներխուժել էին Գուգարաց աշխարհը։ Քարայրը երկու բաժանմունք ունի. մեկը տղամարդկանց, մյուսը կանանց համար։ Թշնամին չի կարողացել թափանցել այս անառիկ քարայրը և պարտված ետ է վերադարձել։ Այնտեղ կարելի է իջնել միայն պարաններով։

1273 թվականին Զառնիի քարայրում ճգնել է հայ մեծ գիտնական Վարդան Բարձրաբերդցին։

Դո՛ւք, երեխաներ, անշուշտ լսել և կարդացել եք մեր գրչագիր մագաղաթների մասին։ Սրանից մոտ 100 տարի առաջ Զառնիի քարայրից դուրս են բերել բազմաթիվ մագաղաթներ։ Իր ժամանակին Հաղպատի գրադարանի զարդն են հանդիսացել այդ քարայրից հանված գրքերը։

Լոռու քարայրները մեր նախնիների հուշարձաններից են։ Այս քարայրներում ու լեռներում են ապաստանել նրանք՝ մոնղոլների, լեզգիների, պարսիկների ու օսմանցիների դեմ պայքարելու ժամանակ։ Այս քարայրներից նրանք ավելի քան 25 անգամ ետ են մղել օտար զավթիչների գրոհները։

Խրամաձորում բոլորը գիտեն Հաղթանոց քարայրի պատմությունը. այստեղ պարտվեց ու փախուստի դիմեց Լենկթեմուրը, որ ասպատակել էր ամբողջ Հայաստանը։ Այդ հաղթանակի առթիվ էլ քարայրը կոչվեց Հաղթանոց։



Լոռու աշխարհը հարուստ է խոշոր քարայրներով, յուրաքանչյուր քարայր իր պատմությունն ունի, որ կապված է ժողովրդի ազատագրական պայքարի և հայ ստեղծագործ մտքի հետ։ Շերեկի, Պարնի, Լաստու քարայրները Ձորագետի բնության հուշարձաններն են, իսկ Ծակ, Ջրոց, Պնդոց, Աչառենց կոչվող քարայրները՝ Սանահինի, որոնք դեռևս չեն ուսումնասիրված։ Նշանավոր են նաև Դիլիջանի և Իջևանի քարայրները։ Մի շարք ավանդություններ կան կապված Դիլիջանի Աստղանա կոչվող քարայրների հետ։ Ծերունիները պատմում են Դառնաքարայրի մասին, որին կայծակն է խփել և երկու մասի բաժանել, առաջացնելով մի զարհուրելի անդունդ։

Անանցանելի է Ղոշաղբրի քարայրը Աղստև գետի աջ ափին։ Իսկ Գուլուլի և Կարմրաքարի քարայրներում հովիվները հարյուրավոր անասուններ են պաշտպանում անձրևից և արևից։

Սյունաց լեռնաշխարհն էլ իր նշանավոր քարայրներն ունի։ Այս երկրում կան և՛ բնական, և՛ արհեստական քարայրներ, որոնք ունեն իրենց կյանքի հերոսական պատմությունը։ Վիթխարի քարաժայռերը իրենց մեջ պարունակում են անմատչելի քարայրներ, որոնք պաշտպանական ամրոցներ են հանդիսացել թշնամու դեմ։

Այդպիսի պատմական ու կուլտուրական նշանակություն ունեցող քարայրներ կան նաև Հայաստանի այլ վայրերում։ Նրանցից մի մասը չի ուսումնասիրված։

ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ԱՇԽԱՐՀԻ ԾԱՅՐԸ

Մինչև վերջին ժամանակներս գիտնականները գտնում էին, որ հին դարերում մարդիկ չեն նավարկել օվկիանոսից այն կողմ: Հին աշխարհում Միջերկրականի վրա ամենահամարձակ ծովայինները համարվում էին փյունիկեցիները: Սակայն նրանք էլ, ըստ պատմաբանների, եթե անցնում էին այժմյան Ջիբրալթարը, ապա աշխատում էին չհեռանալ ափից: Չէ՞ որ հին ժողովուրդների համոզմունքով Ատլանտյան օվկիանոսից այն կողմ վերջանում էր աշխարհը: Սակայն հետազոտողները գտնում են ավելի ու ավելի համոզիչ փաստեր, որոնք վկայում են այն մասին, թե աշխարհը ամենահին ժամանակներում էլ այնքան նեղ չի եղել: Ահա այդպիսի փաստերից մեկը:

Դեռևս 1838 թվականին Ամերիկայի Արևմտյան Վիրգինիա նահանգում քարի վրա խորհրդավոր մի արձանագրություն է գտնվել փյունիկյան գրերով: Արձանագրությունն ասում է. «Կիտունա (Կիպրոս) աստվածամայրը-քրմուհի Տանիտն է-կանխատեսության և գիտության (գիտելիքների) աղբյուրն է Տանիտը»: Քարի մոտ գտնվել է մի կանացի գանգ: Ենթադրել են, որ այն արձանագրության մեջ նշված կարթագենական աստվածուհի Տանիտի քրմուհու գանգն է: (Տանիտը Կարթագենի և նրա ենթակա բնակավայրերի գլխավոր աստվածուհին է: Փյունիկական մյուս քաղաքներում նա Աշտորեթ անունն էր կրում:

Փյունիկական գրեր՝ Ամերիկայում: Թվում է, թե այդ պետք է զարմացներ գիտնականներին: Բայց և այնպես, այն ժամանակ ինչ-որ չափով համոզիչ կերպով չեն կարողացել պարզաբանել գյուտը, և այն մոռացվել էր:

Համարյա հարյուր տարի հետո, 1932 թվականին, այդ նույն նահանգում գտան փյունիկական ևս մի արձանագրություն նույնպես գրված քարի վրա, որ թարգմանվում է այսպես. «Զուհակ բերան-Տանիտի տեղում-մեռած վաճառական-Տանիտ»:

Եվ վերջին գյուտը վերաբերվում է 1956 թվականին: Գիտնականները հայտնաբերել են նույնպիսի արձանագրություններ, ինչպես առաջին երկու քարերի վրա:

Հնադարյան փյունիկեցիները գրության մեջ գործածում էին միայն բաղաձայներ, դրա համար էլ նրանց բնագրերը կարդալը դժվար է, նույնիսկ լեզուն լավ իմանալու դեպքում: Հնարավոր է, որ վերջին արձանագրությունը ճիշտ չի թարգմանված: Այն հնչում է որպես անեծք. «Ամպեր, որոտ, պարտք, մահվան գետ Տանիտ»:

Նշանների և բառի գրության ձևը երեք արձանագրություններում էլ միանման է:

Ամենայն հավանականությամբ արձանագրությունները գրել են հին փյունիկեցիները: Դրանք գրված են 7–4-րդ դարերում մեր թվարկությունից առաջ: Չի բացառվում, որ բոլորից առաջ փյունիկեցի ծովագնացներն են եղել Ամերիկայում: Այդ ժամանակ Կարթագենը, որ մինչ այդ Փյունիկիայի գաղութն էր և հասավ իր ծաղկմանը, դարձավ ինքնուրույն: Բայց ինչպե՞ս նրանք հասան Ամերիկա: Այդ հարցին պատասխանել առայժմ հնարավոր չէ: Գուցե նրանց նավը Ամերիկայի մայր ցամաքը տարել են քամիները և նավապետը վերադառնալու վճռականություն չի ունեցել, ու ճանապարհորդները խորացել են անծանոթ մայր ցամաքի տերիտորիան: Կարող է նաև, որ առաջին անհայտ հայտնագործողները վճռել են ստուգել, թե իսկապե՞ս անսահման ծովից այն կողմ, արևմուտքում վերջանում է Երկիրը:



## ԼՈՂԱՑՈՂ ՄԱՅՐ ՑԱՄԱՔՆԵՐ

*Հետազոտությունները ցույց են տվել, որ մայր ցամաքները երկրի պտույտի ազդեցության տակ «լողում» են դեպի արևմուտք և դեպի հասարակած: Գրենլանդիան, օրինակ, Եվրոպայից տարեկան հեռանում է 36 մետրով: Վաշինգտոնի և Փարիզի միջև եղած տարածությունը տարեկան մեծանում է մոտավորապես 4 մետրով: 1926 թվականից մինչև 1933 թվականը Բուենոս-Այրեսը 15 մետր «հեռացել է» դեպի արևմուտք:*

*Ցամաքի զանազան մասեր շարժվում են նաև ուղղահայաց: Ոմանք ծովի մակերևույթի համեմատությամբ դանդաղ բարձրանում են վերև, իսկ մյուսները՝ իջնում: Պարսից ծովի և Միջերկրական ու Սև ծովերի քաղաքներից ու նավահանգիստներից մի քանիսը իջել են ջրի տակ: Իսկ Սկանդինավյան թերակղզին տարեկան մեկ մետր բարձրանում է ծովի մակերևույթից:*



Մ. ՍԱՐՅԱՆ — Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ



Մ. ՍԱՐՅԱՆ

ԲԱՍԱՐԳԵՉԱՐ



Մ. ՍԱՐՅԱՆ

ԳԱՌՆԱՆԸ



Մ. ՍԱՐՅԱՆ
ՀԱՆԳՍՏԻ ՊԱՀԻՆ

Մ. ՍԱՐՅԱՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՅԶԱԺ

Նկ. ԱԼԲԵՐՏ ԿԱՐԱԳՅԱՆԻ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԸ

ՀՐԱՉՅԱ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

Երբ նայում ենք Ասիայի ֆիզիկական քարտեզին, տեսնում ենք, որ նրա հարավային մասով, Փոքր Ասիայից մինչև Մալայան արշիպելագ, անցնում են բարձրաբերձ լեռներ։ Թվում է, թե այդ մասում շագանակագույն մի վարագույր է կախված, որի ներքևի եզրը տեղ-տեղ վերև է բարձրացված, կարծես հանգույցներ են կապել։ Կենտրոնական հանգույցը Պամիրի լեռնաշխարհն է։ Արևելքում մի հանգույց կա այնտեղ, որտեղ Ինդոսի վտակ Բրահմապուտրան ճեղքում է Հիմալայան լեռնաշղթան։ Իսկ արևմուտքում Իրանյան ու Փոքր Ասիայի լեռնաշղթաները ներկայացնող ծալքերը հավաքվել են ու քարացել Հայկական լեռնաշխարհում։

Աշխարհի հանրահայտ ատլասներում Եփրատ գետից մինչև Փոքր Կովկասի լեռնաշղթան ընկած տարածության վրա գրված է՝ «Արմենիա» կամ «Հայկական լեռնաշխարհ»։ Սակայն ինչո՞ւ է այն այդպես կոչվում։ Հազարամյակներ առաջ հենց այս լեռնաշխարհում ծնունդ առավ ու ձևավորվեց հայ ժողովուրդը։ Այս լեռնաշխարհում նա մաքառեց իր ազատության ու անկախության համար և մնաց անաղարտ։

Հայկական լեռնաշխարհը կարծես մի լեռնային կղզի լինի Անդրկովկասի ու Միջագետքի դաշտավայրերի, Իրանական ու Անատոլիական բարձրավանդակների միջև։ Բարձրաբերձ ձյունապատ լեռնագագաթները, անդնդախոր կիրճերը, հրաբխային կոները, բերքառատ գոգհովիտները, թովիչ անտառներն ու հազարերանգ լեռնային մարգագետինները այնքան գեղեցիկ ու հետաքրքիր են դարձնում բնությունը, որ յուրաքանչյուր բնագետ անսահման ասպարեզ է գտնում ուսումնասիրության համար։

Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմուտքում Պոնտական լեռներն են, հյուսիսում և արևելքում՝ Փոքր Կովկասի լեռները, հարավում Հայկական Տավրոսն է, իսկ արևմուտքում՝ Եփրատ գետի աջ ափին, Անտիտավրոսը։ Այս սահմաններում նրա տարածությունը ավելի քան 300 հազար քառակուսի կիլոմետր է։ Հայկական լեռնաշխարհում բազմաթիվ լեռնաշղթաներ կան, սակայն նրա ողնաշարը կազմում է Հայկական պարը։ Նրա արևելյան ծայրին բազմել է աշխարհում ամենագեղեցիկ հրաբուխներից մեկը՝ Մասիսը կամ Արարատը 5156 մ. բարձրությամբ։ Շատ լեռնագագաթներ կան մեր մոլորակի վրա, որոնք իրենց բարձրությամբ գերազանցում են Մասիսին, սակայն նրանցից և ոչ մեկը չունի այն հարաբերական բարձրությունը, որպիսին ունի Մասիսը։ Նրանցից շատերը, ինչպես օրինակ՝ աշխարհի ամենաբարձր գագաթ Ջոմոլունգման կամ Կովկասյան լեռնաշղթայի գագաթները, այնպես ցայտուն արտահայտված բարձրություն չունեն այդ շղթայի ֆոնի վրա։ Այլ է պատկերը Մասիսի մոտ։ Արարատյան դաշտից 4200 մետր հարաբերական բարձրությամբ վեր է խոյանում Արարատը և իր փոքր եղբոր՝ Սիսի կամ Փոքր Արարատի հետ միասին ստեղծում է մի աննման պատկեր, որով զարդարված է նաև Հայկական գերբը։

Հայկական Պարի հակառակ ծայրին, Արփա գետի ակունքում, Բյուրակնի լեռներն են։ Այստեղ ամեն մի ժայռից աղբյուր է բխում, այնքան շատ են մանր լճակները, որ այն հազարան լճերի երկիր են անվանում։ Բյուրակնից արևմուտք՝ Ներքին Տավրոսն է մինչև Եփրատ, որի մի մասը անվանում են Դերսիմ։

Հայկական լեռնաշխարհում շատ են հրաբուխները։ Միլիոնավոր տարիներ առաջ՝ երկրի ճեղքերից արտավիժած հրահեղուկ լավան իջնելով ցած, Կարսի, Արդահանի, Լոռվա, Եղվարդի շրջակայքում ստեղծել է բազմաթիվ դաշտեր ու բարձրավանդակներ։ Շատ են կոնաձև հրաբխային գագաթները, որոնցից Թոնդուրեկը՝ Վանա լճից հյուսիս-արևելք, մինչև այժմ դեռ չի հանգստացել և ծխում է։ Վանա լճի արևմտյան ափին գտնվող Նեմրութը 1441 թվականին վերջին անգամ ժայթքեց ու մինչև այժմ կենդանության նշաններ ցույց չի տվել։ Նրա խառնարանը լցված է ջրով և հիասքանչ տեսարան է ստեղծում։ Կան այնպիսի հանգած հրաբուխներ, որոնց վրա տարվա բոլոր ամիսներին ձյուն կա. Սիփանը՝ Վանա լճի հյուսիսային մասում, Արագածը, Գեղամա, Վարդենիսի լեռները, Արսիանի շղթան՝ Քուռ և Ճորոխ գետերի միջև և այլն։ Նշված լեռնազանգվածներում ու լեռնաշղթաներում մինչև օրս պահպանվել են ավելի մանր հրաբխային խարամային




կոներ, որոնք ժայթքել են սրանից 6—10 հազար տարի առաջ:

Հայկական լեռնաշխարհում շատ են արգավանդ հովիտները: Նրանցից կարևորները գտնվում են Արաքսի և Արածանիի ափերին: Արաքսի երկու ափերին տարածվում է Արարատյան դաշտը, որը լեռնաշխարհի սիրտն է. այստեղ աճում են խաղող, մրգեր, հացահատիկ, բամբակ: Եփրատի վտակ Մուրադ գետի (որին հայերեն անվանում են Արածանի) երկու կողմերում տարածվում են Ալաշկերտի, Մանազկերտի, Մշո դաշտերը:

Հայկական լեռնաշխարհը ջրաբաշխ է: Այստեղ են ծնավորվում Եփրատը՝ Արածանի, Արաքսը՝ Ախուրյան, Հրազդան, Որոտան, Քուռը՝ Խրամ, Դեբեդ վտակներով և Ճորոխը: Լեռնաշխարհի զարդն են կազմում նրա լճերը՝ Վանա, Սևանա, Չլդըրի և շատ այլ մանր լճեր: Շատերը Հայկական լեռնաշխարհի մեջ են մտցնում նաև Ռեզայե (Ուրմիո) լիճը, որը հնում կոչվում էր Կապուտան, սակայն նա շատ աղի է և իր բնությամբ ավելի մոտ է Իրանական բարձրավանդակի լճերին:



Գեղեցկուհի Սևանի ջրերով այժմ աշխատում են Հրազդանի կասկադի հիդրոկայանները և լույսով ողողում Սովետական Հայաստանը. նրա ջրերը կյանք են տալիս Արարատյան դաշտի անջրդի հողերին:

Վանա լիճը գտնվում է ծովի մակերևույթից 1662 մետր բարձրության վրա՝ 240 մետրով ավելի ցած, քան Սևանը, սակայն նրանցից կրրկնակի անգամ մեծ է և ունի աղի ջուր: Դեռևս շատ հին ժամանակներից հայտնի է, որ Վանա լճի ջուրը առանց օճառի մաքուր լվանում է շորերը. նշանակում է. նա պարունակում է նաև սոդա: Վանա լճում են գտնվում հանրահայտ Ախթամար, Լիմ, Կտուց կղզիները՝ իրենց պատմական հուշարձաններով: Վանա Լճի ափին է գտնըվում աշխարհի ամենահնագույն քաղաքներից մեկը՝ Վանը իր աշխարհահռչակ սեպագիր արձանագրություններով: Հայկական լեռնաշխարհը ունի խիստ կլիմայական պայմաններ: Նրա ցածրադիր հովիտներում ամռանը շոգ է, միջին ջերմաստիճանը՝ 20—25, երբեմն՝ 40 աստիճան, իսկ ձմռանը ցուրտ է՝ միջին ջերմաստիճանը – 5—10: Ղարսում և Էրզրումում այն կարող է հասնել 40—43 աստիճանի: Ձմռանը ամենուրեք ձյուն է գալիս, սակայն ցածրադիր մասերում այն կայուն ծածկ չի առաջացնում: Բարձրադիր մասերում ճանապարհները փակվում են 6—8 ամիս:

Բազմազան է լեռնաշխարհի բուսականությունը: Նրա կենտրոնական մասում անտառները շատ քիչ են, գերակշռում են տափաստանները: Հայտնի են Սարիղամիշի անտառները, որոնք սոճու լավ փայտ ունեն: Լեռների բարձր մասերը ծածկված են հյութալի մարգագետիններով:




Արածանի գետի հովտում, հատկապես Մշո դաշտում, մի շատ հետաքրքիր երևույթ է նկատվում: Ամառային ամիսներին այստեղ խոտերի, ծառերի վրա օդից նստում է մի տեսակ հյութ՝ գազպա, որը մեղրի է նմանվում: Պարզվում է, որ շրջապատի լեռներից ծաղկափոշին նեկտարի հետ միասին քամու միջոցով տեղափոխվում է և նստում հովտի ցածրադիր մասերում: Տեղացիները հավաքում են զանազան թփեր, տաքացնում, իսկ նրանց վրա նստած քաղցր հյութը օգտագործում:

Հայկական լեռնաշխարհը շատ հարուստ է հանածո հարստություններով՝ քարածխով, երկաթով, գունավոր մետաղներով, նավթով, շինանյութերով, աղով, հանքային ջրերով և այլն: Նշված հարստությունները Թուրքիայի տերիտորիայում գրեթե չեն օգտագործվում:

Հայկական լեռնաշխարհի մեծ մասը այժմ Թուրքիայի տերիտորիայում է, մի մասն էլ՝ Իրանի: Միայն արևելյան և հյուսիսային մի հատվածն է, որ գտնվում է Սովետական Միության սահմաններում: 20-րդ դար.ի սկզբում լեռնաշխարհի հիմնական բնակիչները հայերն էին: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայերի մեծ մասը բնաջնջվեց, մի մասը հեռացավ հայրենի երկրից և ցրվեց աշխարհով մեկ: Լեռնաշխարհի բնակիչների միայն մի փոքր մասը իր փրկությունը գտավ Սովետական Հայաստանի սահմաններում, որտեղ ծաղկեց տնտեսությունը, գիտությունը, կուլտուրան: Այժմ աշխարհի բոլոր կողմերից տարաբախտ հայերի հայացքները ուղղված են դեպի Սովետական Հայաստան, որը գրկաբաց ընդունում է տասնյակ տարիներ առաջ հրաշքով փրկված իր զավակներին:





# ՀՐԱՇՈՒՆՉ ԼԵՌՆԵՐ

Կամչատկա թերակղզին զարմանալի և անսովոր շատ բաներ ունի։ Բայց ամենից զարմանալին գործող հրաբուխներն են, կամ ինչպես հնում են ասել՝ «հրաշունչ լեռները»։ Թերակղզու հյուսիսից հարավ ձգվող լեռնաշղթայի մեջ տեղ-տեղ, ուղղաձիգ վրանների նման, վեր են ցցված հրաբխային լեռները։ Նրանցից մի քանիսից բարձրանում են գոլորշու սյուներ, ինչպես ասում են՝ հրաբուխները ծխում են։

Հրաբխային լեռների գագաթը շատ դժվար է բարձրանալ։ Լանջերին մոտենալու համար հարկավոր է անցնել բազմաթիվ հովիտներ, ձորեր, խոր անտառներ։ Ինչքան մոտենում ենք հրաբխային լեռան լանջին, ճանապարհը այնքան անանցանելի է դառնում, արահետները կորչում են սև քարակույտերի մեջ։ Այս ամբողջ քաոսում վեր են խոյանում հրաբխային լեռների սրածայր գագաթները, որոնք ծածկված են հավերժական ձյան շերտերով։ Հրաբխի ծխելու ժամանակ ձյունը հալչում է և դառնում սև կամ կարմրավուն։ Եթե երկրաբաններին կամ տուրիստներին հաջողվի բարձրանալ հրաբխային լեռան գագաթը, ապա նրանք հսկա քարակույտերի մեջ կտեսնեն նրա բացված երախը, որը հենց հրաբխի խառնարանն է։ Խառնարանի մեջ լցված են քարերի մեծ ու փոքր կտորներ, իսկ պատերի ու հատակի ճեղքերից սուլոցով կամ հանգիստ բարձրանում են գազի և գոլորշու շիթեր, որոնք ամպի նման կանգնում են հրաբխային լեռան վրա։ Այսպիսի հրաբուխները կոչվում են գործող։ Նրանք կարող են տարիներով կամ ամիսներով այդպես ծխալ մինչև ժայթքումը։ Ըստ վերջին տվյալների, երկրագնդի վրա այժմ կա 476 գործող հրաբուխ։ Մեծ մասամբ նրանք տեղավորված են ծովափերին կամ կղզիների վրա։



Ժայթքումից մի քանի օր առաջ հրաբուխը սկսում է ուժեղ ծխալ։ Հետո հանկարծ գետինը սկսում է դղրդալ, բարձրանում է ուժեղ աղմուկ ու սուլոց, գետինը ցնցվում է։ Խառնարանից ժայթքում է թանձր ամպի սյուն, ուժեղ պայթյունով դուրս են շպրտվում քարերի կտորներ։ Գետինը ծածկվում է մոխրի և փոշու տաք անձրևով, կայծակները շամփրում են օդը, և խառնարանից դուրս է ժայթքում հրահեղուկ լավան, որը հոսում է լանջն ի վար և սառչելով վերածվում քարի։ Վախն ու սարսափը համակում է մարդկանց։ Մարդիկ թողնելով տուն, ունեցվածք, փախչում են, բայց ճանապարհին նրանց դիմավորում է կամ նոր հրահեղուկ լավա, կամ շիկացած փոշու անձրև։



Հին ժամանակներում, երբ մարդիկ չէին կարողանում բացատրել բնության այդ երևույթի պատճառները, դրանց շուրջը ստեղծել են բազմաթիվ ավանդություններ։ Համարյա բոլոր ժողովուրդների մոտ «հրաշունչ լեռը» համարվել է մեռածների կամ ոգիների ապաստարան։ Հին հույները հրաբխային վայրերը համարում էին կրակի աստծո տիրապետության շրջան։

Հույները, եգիպտացիները և հռոմայեցիները մեր օրերից դեռ 2000 տարի առաջ մտածել են երկրի կեղևի կառուցվածքի և հրաբուխների առաջացման մասին։ Գործող մի քանի հրաբուխների մոտ կառուցված են հատուկ գիտա-հետազոտական կայաններ։

Այժմ երկրի վրա գործող հրաբուխներից հայտնի են Վեզուվը (Իտալիա), Կլյուչևսկայա Սոպկան (Կամչատկա), Էտնան և Ստրոմբոլին (Տիրենյան ծով), Մաունա-Լոան և Կիլաուեան (Հավայան կղզիներ), Մոն-պելեն (Մարտինիկյան կղզիներ), Կատմային (Ալյասկա), Կրակատաուն (Հավայան կղզիների մոտ) և շատ ուրիշները։

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ՍՏԱԽՈՍՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԲԱՏՅԱՆԻ

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

Բանանիտոյի փախուստի պատճառով առաջացած իրարանցումից հետո, խելագարանոցում նորից հանգստություն տիրեց: Հիվանդասենյակներում, խցերում և միջանցքներում բոլորը քնած էին: Արթուն էր միայն խոհանոցի դժբախտ տղան: Նրան գրեթե երբեք չէր հաջողվում քնել, որովհետև միշտ քաղցած էր լինում և գիշերները մինչև լույս նա քրքրում էր թափոնը՝ ուտելու որևէ բան գտնելու հույսով: Բանանիտոն և նրանք, ովքեր ընկել էին նկարչի հետևից, այդպիսին քիչ էին հետաքրքրում: Նա միայն հետաքրքրվեց այն տարօրինակ տղայով, որը, ճիշտն ասած, բարձրահասակ չէր, այլ ընդհակառակը, նույնիսկ կարճահասակ էր և որը կանգնել էր հրապարակի կենտրոնում, ուղիղ խելագարանոցի դիմաց ու կլկլացնելով երգում էր:

Խոհանոցի տղան կարտոֆիլի կեղևներ էր ուտում և նայելով երգողին, գլուխն էր օրորում.

— Սա, երևում է, խելագարներից խելքը թռցրել է: Ո՞վ է լսել, որ սերենադներ երգեն ոչ թե գեղեցիկ աղջիկներին, այլ՝ խելագարանոցի պատուհանների տակ: Ասենք, դա իր գործն է: Բայց այս ի՜նչ ուժեղ ձայն է: Գրազ կգամ, որ հիմա նրան պահակները կբռնեն:

Բայց պահակները Կաղլիկ-կատվին ապարդյուն հետապնդելուց հետո, մեռելի նման պինդ քնած էին:

Ջելսոմինոն, որը ձայնալարերը փորձելու համար սկսեց երգել կիսաձայն, այժմ ձայնն ավելի էր բարձրացնում: Խոհանոցի տղան մոռացավ կարտոֆիլի կճեպները և այդպես էլ մնաց բերանը բաց:

— Ահա, խնդրեմ. նրան լսելով՝ մարդ քաղցը բոլորովին մոռանում է:

Այդ րոպեին պատուհանի ապակիները ջարդուփշուր եղան և կտորներից մեկը քիչ մնաց կպչեր տղայի քթին:

— Է՜յ, այդ ո՞վ է քար գցում:

Եվ անմիջապես խելագարանոցի հսկայական ու մռայլ շենքի տարբեր մասերում և տարբեր հարկերում սկսեցին պատուհանների ապակիները իրար հետևից դուրս թռչել: Պահնորդները սկսեցին վազվզել բոլոր միջանցքներով ու մտնել հիվանդասենյակները՝ կարծելով, թե բանտարկյալներն են ապստամբել: Բայց նրանք ստիպված էին շուտով կարծիքը փոխել: Իսկապես բանտարկյալներն արթնացել էին, բայց նրանք շատ հանգիստ էին և վայելում էին Ջելսոմինոյի երգեցողությունը:

— Այդ ո՞վ է այստեղ պատուհանները ջարդում,— գոռում էին պահնորդները:

— Է՜յ, սո՜ւս մնացեք,— պատասխանի փոխարեն սաստեցին այս ու այն կողմից:— Թողեք երգը լսենք: Մե՞զ ինչ, թե ապակիները ջարդվում են: Հո մեր ապակիները չե՞ն:

Հետո սկսեցին կտոր-կտոր լինել նաև պատուհանների վանդակները: Երկաթե ձողերը ջարդվում էին լուցկու նման և, լուսամուտի շրջանակներից պոկվելով, ընկնում էին ջրով լի փոսի մեջ ու սուզվում հատակը:

Երբ խելագարանոցի դիրեկտորն այդ մասին իմացավ, սկսեց դողալ:

— Ցուրտ է երևի,— ասաց նա իր քարտուղարներին, բայց իր մտքում ասաց. «Երևի երկրաշարժ է սկսվել»:

Նա կանչեց իր սերժանտին և բոլորին ասաց, որ գնում է ամեն ինչի մասին մինիստրին զեկուցելու և փախավ իր քաղաքամերձ ամառանոցը, խելագարանոցը բախտի քմահաճույքին թողնելով:

«Ի՞նչ մինիստր, ի՞նչ բան,— չարությունից իրենց կորցրած մտածում էին քարտուղարները,— նա ուղղակի ճղեց, մինիստրը պատճառ էր միայն: Իսկ մենք, ի՞նչ է, պիտի գտնվե՞նք ինչպես մկները թակարդում: Ա՜յդ էր պակաս»:

Նրանք իրար հետևից, մեկը՝ մեքենայով, մյուսը՝ տարով, այնքան արագ ճղեցին առկախյալ կամուրջի վրայով, որ դարպասի մոտ կանգնած պահակները նույնիսկ չնկատեցին էլ, թե ինչպես չքացան նրանք:

---

Սկիզբը՝ նախորդ համարում:

Սկսվում էր լուսաբացը, և տների կտուրներին արդեն սահում էին լույսի գունատ շողերը։ Ջելսոմինոյի համար սա մի ազդանշան եղավ, որը կարծես ասաց նրան. «Բա՛րձր երգիր»։

Մի լսե՜ք դուք նրան այն ժամանակ։ Նրա ձայնը դուրս պոռթկաց այնպիսի ուժով, ինչպես հրաբխի խառնարանից լավան է ժայթքում։ Խելագարանոցի բոլոր փայտե դռները տաշեղ դարձած թռան, իսկ երկաթե դռներն այնպես ծռմռվեցին, որ այլևս դռան չէին նմանվում և ովքեր փակված էին այդ դռների հետևում, ուրախությունից թռչկոտելով դուրս եկան միջանցք։

Պահնորդները, հսկիչները, սանիտարները—մեկը մյուսի հետևից վազեցին դեպի ելքը և առկախյալ կամուրջով դուրս թռան հրապարակ։ Բոլորը հանկարծ հիշեցին, որ քաղաքում կարևոր գործ ունեն։

— Ես պետք է շունս լողացնեմ,— ասում էր մեկը։

— Ինձ մի քանի օրով հրավիրել են ծովափ,— ասում էր մյուսը։

— Ես մոռացել եմ իմ կարմիր ձկների ջուրը փոխել։ Վախենում եմ, որ նրանք սատկեն։

Նրանք այնպես էին սովորել ստել, որ չէին կարող ուղղակի խոստովանել, թե վախենում են։

Մի խոսքով, մի քանի րոպեում խելագարանոցի անձնակազմից ոչ ոք չմնաց, բացի խոհանոցի գզրախառ տղայից։ Կաղամբի կոթը ձեռքին բռնած, նա մնացել էր զարմանքից բերանը բաց, որովհետև բոլորովին ուտել չէր ուզում և իր կյանքում առաջին անգամ զգաց, թե ինչպես թարմ հոսանքի նման նրա գլխով գայթակղիչ մտքեր են անցնում։

Երբ բանտարկյալները նկատեցին, որ բոլոր հսկիչները փախել են, իրենք էլ սկսեցին դուրս գալ։

Ջելսոմինոն երգելը թողեց և բոլոր դուրս եկողներից հարցնում էր, թե չե՞ն տեսել արդյոք Կաղլիկ-կատվին։ Բայց ոչ ոք նրան խելքը գլխին պատասխան չկարողացավ տալ։ Նա համբերությունը կորցրեց։

— Որևէ մեկը մնացե՞լ է ներսում,— գոռաց նա։

— Ո՛չ ոք,— պատասխանեցին նրան։

— Որ այդպես է, տեսե՛ք։

Նա ամբողջ կրծքով մեկ օդ ներս քաշեց, ինչպես անում են ջրասույզները սուզվելուց առաջ, ձեռքերին խողովակի ձև տվեց, մոտեցրեց շրթունքներին, որպեսզի ձայնը մի ուղղությամբ գնա, և ճչաց։ Եթե Մարսի կամ Արուսյակի վրա բնակիչներ լինեին և ունենային լսողություն, նրանք էլ, երևի, կլսեին Ջելսոմինոյի ձայնը։ Բավական է ասել, որ շենքն այնպես ճոճվեց, կարծես ցիկլոն էր անցնում։ Ծխնելույզներն ու կղմինդրները կտուրից այնպես թռան, կարծես փոշի լինեին։ Հետո, սկսած վերևի հարկից, պատերը ծռվեցին, դողդողացին և սարսափելի դղրդյունով փուլ եկան՝ լցնելով ջրափոսը և ջուրը այս ու այն կողմ տարածելով։

Այս բոլորը տևեց մի րոպե։ Խոհանոցի տղան, որ մնացել էր ներսում նույնիսկ բանտարկյալների փախուստից հետո, հազիվ հասցրեց դուրս գալ իր պատուհանից և մի երկու թռիչքով անցավ ջրափոսն ու հայտնվեց հրապարակում։ Նրա հետևից փուլ եկավ խելագարանոցի ամբողջ շենքը։

Ամբողջ հրապարակով մեկ հնչեց «ուռա՜», և հենց այդ վայրկյանին դուրս եկավ արևը, թեև ոչ ոք գլխի չէր ընկել գնալ նրա հետևից ու կանչել. «Շտապի՛ր, թե չէ չես հասնի այդ հիանալի տեսարանին»։



Հրապարակի մարդիկ Ջելսոմինոյին ձեռքերի վրա առան և հաղթականորեն առաջ տարան, իսկ թղթակիցները չկարողացան մոտենալ նրան, որ գոնե հարցնեին, թե ի՞նչ տպավորություններ ունի նա։

Մի ժամ հետո դուրս եկավ «Օրինակելի խաբեբա» թերթի արտակարգ համարը։ Ամբողջ առաջին էջում հսկայական տառերով գրված էր մի այսպիսի վերնագիր.

ՏԵՆՈՐ ՋԵԼՍՈՄԻՆՈՅԻ ՆՈՐ ԱՆՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ. ԻՐ ԵՐԳՈՎ ՆՐԱՆ ՉՀԱՋՈՂՎԵՑ ԽԵԼԱԳԱՐԱՆՈՑԸ ՔԱՆԴԵԼ։

Թերթի խմբագիրը, հաճույքից ձեռքերը շփելով, ասում էր.

— Հիանալի հերքում ստացվեց։ Այսօր ես ամենաքիչը հարյուր հազար օրինակ թերթ կծախեմ։

Բայց շուտով «Օրինակելի խաբեբա» թերթի ցրիչները վերադարձան չվաճառված թերթերի կապոցները ձեռքներին։ Ո՛չ ոք չուզեց գոնե մի համար գնել։

— Ինչպե՞ս,— գոռաց խմբագիրը։ —Ոչ մի թե՞րթ։ Մարդիկ օրացո՞ւյց են կարդում, ի՞նչ է։

— Ո՛չ, սինյո՛ր խմբագիր,— պատասխանեց ամենահամարձակ ցրիչը։ — Օրացույցն էլ այլևս ոչ ոք չի կարդում։ Ձեր կարծիքով ինչպե՞ս կարող են օրացույցը կարդալ, եթե նրա մեջ դեկտեմբերը օգոստոս է կոչվում։ Մի՞թե մարդիկ կտաքանան միայն նրանից, որ ամսի անունը փոխվել է։ Մեծ բաներ են տեղի ունենում, սինյոր խմբագիր։ Մարդիկ ծիծաղում են մեր երեսին և խորհուրդ են տալիս մեր թերթից թղթե նավակներ շինել։

Այդ ժամանակ խմբագրի առանձնասենյակը մտավ նրա շունը, որն ինքնուրույն կերպով քաղաք էր գնացել։

— Փի՛սի, փի՛սի,— մեքենայորեն կանչեց նրա տերը։

— Հա՛ֆ, հա՛ֆ,— պատասխանեց շունը։

— Այդ ի՞նչ է, դու հաչո՞ւմ ես։

Պատասխանի փոխարեն շունը պոչն ուրախությունից շարժելով՝ սկսեց ավելի ուժգին հաչել։

— Սա հո աշխարհի վե՜րջն է,— բացականչեց խմբագիրը, ճակատի քրտինքը սրբելով։— Իսկական աշխարհի վերջը։



Բայց դա միայն ամեն տեսակի ստի վերջն էր։ Խելագարանոցի ավերումից հետո միանգամից ազատություն ստացան հարյուրավոր մարդիկ, որոնք ճշմարտություն էին ասում, չհաշված շներին, որոնք հաչում էին, կատուներին, որոնք մլավում էին, ձիերին, որոնք խրխնջում էին, ինչպես որ պահանջում էին կենդանաբանության և բնականության օրենքները։ Ճշմարտությունը համաճարակի նման տարածվում էր, և արդեն բնակչության մեծ մասը վարակված էր նրանով։ Խանութպանները արդեն սկսեցին իրենց ապրանքների անունները փոխել ու նոր բառեր կպցնել։

Մի հացավաճառ պոկեց իր խանութի ճակատին կախված «Դրամանյութային պիտույքներ» ցուցանակը, շուռ տվեց և ածուխի կտորով վրան գրեց. «Հաց»։ Իսկույն նրա խանութի առաջ մեծ բազմություն հավաքվեց ու սկսեցին ծափահարել։

Բայց ավելի շատ մարդ հավաքվեց Թագավորական պալատի առջևի մեծ հրապարակում։ Այդ բազմությունը գլխավորում էր Ջելսոմինոն։ Նա երգում էր և նրա ձայնի վրա հավաքվել էին մարդիկ քաղաքի բոլոր թաղամասերից և նույնիսկ մոտակա գյուղերից։

Իր սենյակի պատուհանից Ջակոմոնը տեսավ այդ բազմությունը և ուրախությունից ծափ տվեց։

— Շո՛ւտ, այստեղ եկեք,— գոռաց նա, կանչելով իր պալատականներին։ — Իմ ժողովուրդը ուզում է, որ ես ճառ ասեմ։ Տեսե՛ք, ինչ՜քան հավաքվել են նրանք, որ շնորհավորեն իմ տոնը։

— Մի՞թե այսօր տոն է,— պալատականներն հարցնում էին իրար։

Ձեզ տարօրինակ կթվա, բայց նրանք դեռ չգիտեին, թե ինչ է տեղի ունեցել։ Լրտեսները փոխանակ իրենց գցեին պալատ և ամեն ինչի մասին պատմեին, նետվել էին ամեն մեկն իր համար ապահով տեղ որոնելու։

Ջակոմոն թագավորի պալատում կատուները շարունակում էին հաչել։ Դրանք ամենավերջին դժբախտ կատուներն էին ամբողջ թագավորության մեջ։

(Շարունակելի)




*Սիրելի խմբագրություն, խնդրում ենք պատասխանել, թե երբ է հիմնադրվել Երևան քաղաքը և որտեղից է առաջացել նրա անունը։*

*ՆՈՒԲԱՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ*
*(Սևան, Մովագյուղի միջն. դպրոցի աշակերտուհի)*
*ՌԱՖԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ*
*(Երևան, Չարենցի անվան դպրոցի աշակերտ)*

Մնզանից շատ վաղ, համարյա չորս հազար տարի առաջ, Հայաստան երկրի տեր էին դարձել ուրարտացիները։ Այն ժամանակ Հայաստանը կոչվում էր Նաիրի, իսկ ուրարտացիներնասում էին՝ Բիայնա։ Սրանց թագավորները նստում էին Վանա լճի ափին կառուցված Տուշպա քաղաքում, որտեղ հետո կանգնեց հայոց Վան քաղաքը։

Ուրարտացիները մշտապես պատերազմներ էին մղում, նվաճում Նաիրի երկրի հյուսիսը, ամեն մի նվաճված վայրում կառուցում բերդ ու քաղաք։ Տուշպա քաղաքի մոտ, մի ժայռի վրա մնացել է Մենուայի որդի Արգիշտի առաջին թագավորի սեպագիր արձանագրությունը։ Այս Արգիշտին ասում է, թե՝ 6600 զերի տեղափոխելով, կառուցել է Էրեբունի քաղաքը...

Ի՞նչ քաղաք է սա, որտե՞ղ է կառուցվել։ Այս զաղտնիքը երկար ժամանակ մնում էր անհայտ։



Արգիշտի I սեպագիր արձանագրությունը Էրեբունու հիմնադրման մասին
(մ. թ. ա. 782 թ.)

1879 թվականին, Արինբերդ կոչվող բլուրի լանջին վար անելիս, մի գյուղացի սեպագիր գրերով քար գտավ։ Գիրն ասում էր, թե՝ «Մենուայի որդի Արգիշտին այս բերդը շինեց հարյուր մեկ հազար քարից»։

Բայց այդտեղ բերդ չկար. բլուրը ծածկված էր արնազույն հողով։

Տասնհինգ տարի հետո, հնագետ Ա. Ա. Իվանովսկին սկսեց փորել-պեղել Արինբերդ բլուրը և գտավ ուրարտական բերդի հետքերը։

Նորից երկար ժամանակ անցավ, մինչև 1950 և 1958 թվականներին նոր պեղումներ կատարվեցին Արինբերդում։ Հողի տակից բացվեց մի հսկայական ու գեղեցիկ կառուցում՝ ուրարտական հեթանոսական տաճար, դահլիճներ ու շենքեր, պարիսպներ ու դարբասներ։ Գտնվեց նաև երկու սեպագիր արձանագրություն, որտեղ գրված էր, թե այս բերդաքաղաքը, մեր թվարկությունից առաջ 782 թվականին, կառուցել է Մենուայի որդի Արգիշտին և կոչել Էրեբունի...

Այսպես պարզվեց հեռավոր Տուշպա քաղաքում, ժայռի վրա փորված արձանագրության գաղտնիքը։ Եվ մենք հիմա գիտենք, որ Էրեբունի կամ Երևանի քաղաքը մեր Երևանն է, Սովետական Միության քաղաքներից ամենահինը, որը 2746 տարեկան է արդեն։

*ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ*



Երևանն այսօր



Երևանը 1913 թվականին

Երևանի բնակչության աճը
(հազ. բնակիչ)





ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



ԱԴԱՄ

# ՄԻՔԵԼԱՆՋԵԼՈ

1489 թվականն էր: Ինչպես միշտ, Ֆլորենցիայի տիրակալ Լորենցո Մեդիչին իր ապարանքի գեղեցկությամբ հմայված՝ ճեմում էր այգում: Հանկարծ կրտ-րիչով քար տաշելու հարվածների ձայնլսեց հեռվից: Ծուրջը նայեց՝ ոչ-ոք չկար:

Լորենցո Մեդիչին քայլերն ուղղեց դեպի ձայնը: Եվ դեռ բավական հեռվից նա նկատեց ինքնամոռաց կերպով աշխատանքով տարված պատանուն: Նա իր ներկայությամբ չէր ուզում հա-վատալ: Խիստ ու կնճռոտված ճակատով տասնչորսամյա պատանին արդեն ավարտում էր հրաշագեղ մի մարմարյա արձան, որը, եթե ինքը չտեսներ դրա ստեղծողին, իրավամբ կարող էր հին աշխարհի կոթողների նմուշներից մեկը համարել:

Իր թաքստոցից Լորենցո Մեդիչին հիանում էր տղայի վրձնի թափ ու ուժեղ հարվածներով, որոնք շունչ, գույն ու երանգ, հոգու խորություն էին կարծես տալիս այդ կարծր, անձև մարմարի կտորին:

Նա այնքան ժամանակ մնաց թաքստոցում, մինչև տղան իր վերջին հարվածից հետո մի քանի քայլ ետ կանգնեց և, աչքերը կկոցած, նայեց արձանին:

— Ողջո՜ւյն, Միքել, այդ ի՞նչ ես անում, ձեռքը տղայի ուսին դնելով, ասաց Մեդիչին:

Թեպետ ցնցվեց տղան, հանկարծակիի եկավ, բայց համարձակ պատասխանեց.

— Քանդակում եմ...

— Ես տեսնում եմ, որ դու կատարյալ տաղանդ ես և կարծես թե մրցել ես ուզում աշխարհի նշանավոր վարպետների հետ,— նա ինքնաբերաբար մոտավ պատանու թևը:

Նրանք քայլեցին միասին:

Հաջորդ առավոտ, երբ Միքելանջելոն եկավ արձանը տանելու, տեսավ, որ այն արդեն չկա: Եվ հենց տարակուսած ետ դարձավ, իր դիմաց տեսավ Լորենցո Մեդիչիին:

— Ե՛կ, զավակս, եկ գնանք. ես շատ բան ունեմ քեզ ցույց տալու:

Նրանք կանգ առան շքեղազարդ սրահներից մեկում: Արվեստի բազմաթիվ գանձերի կողքին Միքելանջելոյի հայացքն ընկավ իր ստեղծած արձանի վրա: Մի պահ կարծես նրա սիրտը դադարեց բաբախելուց և ինքն էլ իր արձանի նման արձանացավ, երբ տեսավ իր առաջին գործն այդպիսի մեծ պատվի արժանացած:

— Միքե՛լ, սիրելի՛ս, դու այսուհետև այստեղ կմնաս: Քեզ համար առանձին սենյակ կհատկացնեմ իմ պալատում, և դու կմասնակցես այստեղ տեղի ունեցող գիտական բանավեճերին, որոնց ներկա են լինում մեծ արվեստագետներ, փիլիսոփաներ ու գիտնականներ: Ես ուզում եմ քեզ իմ կողքին տեսնել, տեսնել քո աճը: Քեզ կրթությունն է հարկավոր և այնուհետև դու մեծ փառք կբերես թե՛ Ֆլորենցիային և թե՛ Մեդիչիներին...

Այդպես էլ եղավ...

Իր ամբողջ կյանքի ընթացքում ուշադրություն չդարձնելով ֆիզիկական հոգնածության վրա, Միքելանջելոն գիշեր ու ցերեկ աշխատում էր իր ստեղծագործությունների վրա, միաժամանակ ուսումնասիրելով գիտության բազմազան ճյուղեր և հատկապես մարդու անատոմիան: Նա ուսումնասիրում և անջնջելիորեն հիշողության մեջ պահում էր մարդկանց և կենդանի-



ԴԱՎԻԹ



ՄՈՎՍԵՍ

ների ամենանրբին շարժումները:

Մի քանի գործերից հետո Միքելանջելոյի համբավը հասավ Հռոմ, իսկ այնուհետև Հուլիոս 2-րդ պապին, որը նույնպես հիացած՝ երիտասարդի տաղանդով, սկսեց պատվերներ տալ նրան:

Թեպետ նկարչությունը Միքելանջելոյի երկրորդ զբաղմունքն էր, բայց նրա համառ աշխատասիրությամբ նկարազարդված Սիքստինյան տաճարի առաստաղն ու պատերը, ինչպես նաև մյուս ստեղծագործությունները, համաշխարհային արվեստի հազվագյուտ զարդը հանդիսացան:

Միքելանջելոն սիրում էր Ֆլորենցիան ու իր ժողովրդին և չէր կարող անտարբեր մնալ, տեսնելով նրա ծանր վիճակը: Ու նա դարձավ իր ժողովրդի ազատագրական շարժումների ամենաակտիվ մասնակիցներից մեկը:

Միքելանջելոն տեսավ իր արվեստի փառքը, զգաց իր ժողովրդի սերն ու համակրանքը, բայց ամբողջ կյանքում ապրելով մենակ, բացի իր աշխատանքից, անձնական ոչ մի երջանկություն չունեցավ:

1564 թվականի փետրվարին, 400 տարի առաջ, վերջին անգամ բաբախեց մեծ արվեստագետի սիրտը: Իր կտակի համաձայն, ֆլորենտացիները Միքելանջելոյի աճյունը գողացան Հռոմից և թաղեցին Սանտա-Կրոչե եկեղեցում, իր սիրելի պոետ Դանտեի կողքին:

*ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆ*

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

# ՀԱԼԱԾՎԱԾ ԳԻՏՆԱԿԱՆԸ

Երեք ու կես դար առաջ էր...

Երկու ֆլորենտացի ընկերներ հանդիպեցին Վենետիկի նավահանգստում: Նրանցից մեկը բարձրահասակ էր, կարճ խուզած մորուքով և ուներ իմաստուն աչքեր, իսկ մյուսը ցածրահասակ էր, երկար, ալեխառն մորուքով: Նրանք կարոտով ողջագուրվեցին, ապա իմաստուն աչքերով մարդը հարցրեց.

—Իմ սիրելի՛ Հորացիո, ես նոր եմ այցելում Վենետիկ, իսկ դու արդեն մեկնո՞ւմ ես այստեղից, ի՞նչ է:

—Այո՛, սիրելի՛ Գալիլեյ, մեկնում... ո՛չ, փախչում եմ այս՝ տեսքով գեղեցիկ, բայց հոգով զարշելի քաղաքից:

—Ինչպե՞ս, մի՞թե այդպիսին է Վենետիկը:

—Անկասկած: Նրան այդպիսին են դարձրել Հռոմի պապը և իրեն շրջապատող կաթոլիկ հոգևորականության ահագին բազմությունը, որը կույր ֆանատիկոս է, տգիտության երկրպագու և աշխատում է տեղն ու տեղը խեղդել ամեն մի լուսավոր շող:

—Այդպե՞ս... Իսկ ո՞ւր ես որոշել գնալ:

—Նրանց անունը չլսելու համար՝ կգնամ թեկուզ աշխարհի ծայրը:

—Լավ որոշում է, բարեկամս, բայց իմացի՛ր, որ աշխարհը ծայր չունի:

—Ինչպե՞ս թե ծայր չունի...

—Այնպես... Երկիրը կլոր է. եթե ուղիղ գծով փորձես գնալ, կրկին կվերադառնաս Հռոմի պապի մոտ:

—Աստված մի՛ արասցե. ինչե՞ր ես ասում, Գալիլե՛յ, ապացույցներ ունե՞ս...

—Ապացույցներ՝ որքան ուզես: Ա՛յ, նայիր այն հեռացող առագաստանավին. սկզբում մեր աչքից կորչում է նրա ներքնամասը, հետո՝ վերնամասը և ապա՝ առագաստը: Հենց դա էլ ցույց է տալիս, որ երկիրը կլոր է: Եվ իմացի՛ր, որ երկիրը օրական մեկ անգամ պտույտ է գործում իր առանցքի շուրջը, իսկ տարին մեկ անգամ՝ արեգակի շուրջը: Դրանից է, որ առաջանում են ցերեկն ու գիշերը և տարվա չորս եղանակները:



—Անհավատալի բաներ ես ասում, Գալիլե՛յ, չէ՞ որ մեր աչքով տեսնում ենք, որ Արևը դուրս է գալիս արևելքից և մայր է մտնում արևմուտքում:

—Ո՛չ, այդպես մեզ թվում է միայն: Արևը անշարժ կանգնած է իր տեղում, իսկ Երկիրն ու մյուս մոլորակները պտտվում են նրա շուրջը: Ես իմ կառուցած այս աստղադիտակով, որը առարկաները մեծացնում է մինչև հազար անգամ, պարզել եմ նաև, որ կրոնավորների կողմից հորինված հարդագողի ճանապարհը աստղախմբերի միացություն է և ոչ ուրիշ բան...

—Օ՛, ինչե՞ր ես ասում, Գալիլե՛յ, դու մեղանչում ես սուրբ գրքի դեմ, ոտնահարում եկեղեցու բազմադարյան հեղինակությունը: Զգուշացի՛ր, դու գտնըվում ես Հռոմի պապի թագավորության մեջ: Նրանք քեզ հերետիկոս կանվանեն և կայրեն խարույկի վրա, ինչպես այրեցին Ջորդանո Բրունոյին:

—Գիտեմ, բարեկամս, գիտեմ: Բայց ոչ մի հեղինակություն ինձ համար բարձր չէ ճշմարտությունից: Այդ տգիտության քուրմերը չարաչար կպատժեին նաև հանճարեղ Կոպերնիկոսին, եթե մինչ այդ նա չվախճանվեր: Նրանք, իհարկե, ինձ էլ չեն խնայի, բայց, միևնույն է, ինչպես նրանք չեն կարող կանգնեցնել երկրի պտույտը, այնպես էլ չեն կարող արգելել գիտության հաղթարշավը...

Եվ այդպես էլ եղավ: Իր ժամանակի մեծագույն գիտնականին կաթոլիկ վարդապետները բանտ նետեցին, երբ նա արդեն 70 տարեկան ծերունի էր: Գիտության խիզախ մարտիկը 8 տարի անցկացրեց բանտում, համբերությամբ տարավ ամեն տեսակ զրկանքներ, բայց չընկճվեց երբեք: Բանտային ծանր պայմաններում նա կրկին քարոզում ու զարգացնում էր Նիկողայոս Կոպերնիկոսի ուսմունքը մոլորակների էության ու շարժման մասին, գրում նոր աշխատություններ:

Ի վերջո եկեղեցու սուրբ հայրերը այդ մեծ մարդուն դրեցին այնպիսի պայմանների մեջ, որ նա զրկվեց տեսողությունից և երկու տարի ապրելով կույր վիճակում, մահացավ բանտում: Ավանդությունն ասում է, որ կյանքի վերջին րոպեներին նա բացականչել է. «Այնուամենայնիվ երկիրը պտտվում է...»: Նրա

ողբերգական մահից հետո եկեղեցականներն այլևս չկարողացան կանգնեցնել գիտության առաջընթացը, և 17-րդ դարը դարձավ բնական գիտությունների ծաղկման դար։

Երկրագնդի բոլոր ժողովուրդները խորին երախտագիտությամբ նշում են աշխարհահռչակ գիտնական Գալիլեո Գալիլեյի ծննդյան 400-ամյակը։

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*



# ՀԱՅ ԲԵՄԻ ԱՆԽՈՆՋ ՎԱՐՊԵՏԸ

Թատրոնը պատրաստվում էր նոր բեմադրության։

Ամբողջ մի ամիս ամեն օր, փորձված գրիմյորների սենյակում աշխույժ աշխատանք էր տարվում։ Բոլորն աշխատում էին ամեն ինչ անել, որ արտաքին նմանությունը կատարյալ ստացվի։

— Կեղծծամը մի քիչ թեք է, իսկ ճակատը պետք է ավելի լայն լինի,— երբեմն դժգոհում էր գլխավոր դերակատարը։

Օրերն անցնում էին, աշխատանքը շարունակվում էր։ Ստացվել էր դերի արտաքին պատկերը։ «Բայց պետք է գտնել կերպարի ներքնաշխարհի ըմբռնումը, մարդկանց հետ խոսել և զրուցել այնպես, ինչպես կխոսեր մեծ առաջնորդը։ Կկարողանա՞մ արդյոք այդ բոլորը հաջողությամբ կատարել»։ Այս մտքերն էին, որ անընդհատ անհանգստացնում էին գլխավոր դերակատարին՝ խոշոր արվեստագետ Վաղարշ Վաղարշյանին։

Տանը, ընկերների հետ խոսելիս, նա մշակում էր հատուկ շարժումներ, խոսելաձև, կարդում էր հուշեր և գրքեր՝ նվիրված Լենինին, դիտում շատ կինոֆիլմեր։

Եվ ահա, 1938 թվականի դեկտեմբերյան մի օր Երևանի Գ. Սունդուկյանի անվան թատրոնում բեմադրվում էր «Հրացանավոր մարդը» պիեսը։ Այդ օրը առաջին անգամ հայ բեմում պետք է երևար ժողովուրդների առաջնորդը, հանճարեղ Լենինը։

Դահլիճում մարում են լույսերը։ Մարդիկ ասես քարանում են։ Բոլորը հուզված, լուռ սպասում են։ Դանդաղ բացվում է վարագույրը։

Հնամաշ հագուստով մի ռուս զինվոր ինչ-որ բան է փնտրում։ Բացվում է դիմացի դուռը և ձեռքերի բթամատերը ժիլետի գրպանները դրած, կտրուկ շարժումներով բեմ է դուրս գալիս ցածրահասակ, շեկ մազերով, կկոցած աչքերով... մի խոսքով, կարծես ինքը՝ Լենինը։ Դահլիճը թնդում է ծափահարություններից։

— Թեյը կողքի սենյակում է,— պատասխանում է նա զինվորին։

Վաղարշյանը հիանալի է կատարում դերը։ Վաղարշյան-Լենինը խոսում է պարզ, որոշակի, հակիրճ։

Միայն մեծ անհատականություն ունեցող արտիստը, նորը ըմբռնող արվեստագետը կարող էր փորձել եղբայրական հանրապետությունների ազգային թատրոնների պատմության մեջ առաջին անգամ բեմ հանել Լենինի կերպարը։

Բացառիկ մեծ է Վաղարշ Վաղարշյանի մատուցած ծառայությունը հայ թատրոնին։ Ունենալով զարմանալի տաղանդ և արտիստական շնորհք, որը ժամանակին հիացմունքով նշել է մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը, Վաղարշյանն իր ամբողջ գիտելիքները ու ունակությունները նվիրել է հայ բեմին։ Երկար տարիներ նա խորախորհուրդ մտքեր է հաղորդել թատերական ինստիտուտի սաներին՝ «բեմական վարպետություն» դասավանդելով նրանց։ Վաղարշյանը ստեղծել է ռեալիստական շատ կերպարներ։ Նրա Ասլան ամին, Մելիք աղան, Սեթո դային, Արբենինը, Համլետը, Եգոր Բուլըչովը, Պրոտասովը մեծագույն նվաճումներ են հայ թատրոնի պատմության մեջ։ Վաղարշյանի հերոսները հաջող են ոչ միայն գործողությամբ, այլև խոսքի կուլտուրայով։ Նրա հերոսների լեզուն գունեղ է, արտահայտիչ և խստորեն անհատականացված։

Բեմի վարպետը միաժամանակ տաղանդավոր դրամատուրգ էր։ Դեռևս 17 տարեկան հասակում նա գրեց իր առաջին «Բարեգործությունից հետո» պիեսը, որտեղ աչքի ընկավ դրամատուրգի նրա անժխտելի շնորհքը։ Նրա հաջողված գործերի թվին են պատկանում «Օղակում», «Վանքածոր», «Մի օր Սալոնիկում» պիեսները։

Վաղարշյանի պիեսները, որոնք աչքի էին ընկնում խոր գաղափարայնությամբ և ռեալիստական արվեստով, զգալի դեր խաղացին սովետահայ դրամատուրգիայի զարգացման գործում։

Լրացավ մեծ արվեստագետի ծննդյան 70 տարին։

*ՎԱՏՅԱ ՍԱՐԳԱՉՅԱՆ*



# ՄԵՐ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆԸ

ԹԱԴԵՎՈՍ ՀԱԿՈԲՅԱՆ

(Պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր)

Ով ծանոթ չէ իր հայրենիքի բնությանը, չի ճանաչում նրա լեռներն ու դաշտերը, գետերն ու լճերը, քաղաքներն ու ավանները, անցյալի ու այժմյան ճարտարապետական կոթողները, նա չի կարող իսկական հայրենասեր լինել։ Հայ ժողովուրդն ապրել ու իր բազմադարյան պատմությունն է կերտել պատմական Հայաստանում, որն աշխարհագրության մեջ կոչվում է Հայկական լեռնաշխարհ կամ ուղղակի՝ Հայաստան։ Սովետական Հայաստանը մտնում է Հայկական լեռնաշխարհի մեջ, կազմելով վերջինիս հյուսիս-արևելյան մասը։

Մեր բառարանում համառոտ տեղեկություններ ենք հաղորդելու Հայկական լեռնաշխարհի



Սիփան

բնության և պատմական Հայաստանի մայրաքաղաքների ու պատմական այլ նշանավոր վայրերի մասին։ Բառարանը սկսում ենք Հայկական լեռնաշխարհի առավել նշանավոր լեռների համառոտ նկարագրությամբ. լեռներ, որոնք քաղաքակիրթ մարդկությանը հայտնի են ամենահին ժամանակներից և սերտորեն կապված են հնագույն, բայց միշտ նոր ու կենդանի ժողովրդի պատմության հետ։

**ՄԱՍԻՍ.** Մասիսը գտնվում է Հայկական լեռնաշխարհի կենտրոնում, Արարատյան դաշտի հարավ-արևելյան մասում, Երևանի դիմաց, Արաքսի աջ ափին։ Մասիս նշանակում է մայր լեռ կամ սար։ Իրոք որ նա մեր լեռների «մայրն» է, Հայկական լեռնաշխարհի ամենահայտնի լեռը։ Մասիսը հայտնի է նաև Արարատ անունով։ Արարատ անունը ծագել է մեզանից մոտ 3000 տարի առաջ Հայկական լեռնաշխարհում եղած Ուրարտու պետության անունից։ Մասիսը մեկ հիմքից բարձրացած երկու հանգած հրաբխային գագաթներ ունի։ Դրանցից մեկը Մեծ Մասիսն է, որը Հայկական լեռնաշխարհի ամենաբարձր գագաթն է։ Նրա բարձրությունը ծովի մակերևույթից 5156 մ. է։ Մյուս գագաթը Փոքր Մասիսն է, որի բարձրությունը 3914 մ. է։ Մեծ ու Փոքր Մասիսները անզուգական տեսարան են ներկայացնում հատկապես Արարատյան դաշտից ու Երևան քաղաքից։ Դրանց հետ հայ և նույնիսկ օտար ժողովուրդները կապել են մի շարք ավանդություններ ու առասպելներ։ Մեծ Մասիսը հյուսիսային և հարավային կողմից սկսվում է հսկայական խորխորատներով,



Գրգուռ

որոնք հնում կոչվում էին «Մասիսների վիհեր»։ Փոքր Մասիսը կազմում է կանոնավոր բուրգ և իր հիմքով միացած է Մեծ Մասիսին։ Երկու Մասիսների մեջ գտնվում է գեղատեսիլ մի լեռնանցք, որը Մասիսի հսկայական զանգվածի միակ ջրառատ շրջանն է։ Մասիսի լանջերը անտառազուրկ են, բուսականությամբ ու ջրերով աղքատ։ Մասիսներից սկսվում է և դեպի արևմուտք է ձգվում Հայկական լեռնաշխարհի ամենաբարձր լեռնաշղթան՝ Հայկական պարը («պար» նշանակում է լեռնաշղթա, լեռնապար)։

**ՍԻՓԱՆ.** Սիփանը Հայկական լեռնաշխարհի ամենահայտնի լեռնագագաթներից մեկն է։ Կոչվել է նաև Ծիփան, Նեխ-Մասիք։ Սիփան անունը հիշատակ է մնացել մեզանից մի քանի հազար տարի առաջ Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմտյան մասում ապրած ժողովրդի՝ սուբարիների անունից։ Սիփանը Հայկական լեռնաշխարհի երկրորդ բարձր լեռն է։ Նրա բարձրությունը 4434 մ. է։ Սիփանի գագաթից երևում է Հայկական լեռնաշխարհի մեծ մասը, նրա բարձր լեռները, ընդարձակ դաշտերն ու ջրառատ գետերը։ Սիփանից գեղեցիկ է երևում մանավանդ Վանա լիճը և Մանազկերտի դաշտը։ Մասիսի պես Սիփանն էլ հանգած հրաբուխ է և միանգամից բարձրանում է դաշտի մեջ, Մասիսի պես Սիփանի հետ էլ կապված են ժողովրդական երգեր ու ավանդություններ։

**ԱՐԱԳԱԾ.** Սովետական Հայաստանի ամենաբարձր լեռն է։ Բարձրությունը ծովի մակերևույթից 4095 մ. է։ Գտնվում է Երևանից հյուսիս-արևմուտք և վեր է խոյանում իբրև հսկայազանգված ու բազմակատար մի հանգած հրաբուխ։ Անունը կապված է հայկական հնագույն աստվածներից մեկի՝ Արայի անվան հետ։ Պատած է փարթամ

արոտավայրերով ու գույնզգույն ծաղիկների ալվան գորգերով։ Արագածը իրենից ներկայացնում է մի հսկայական ջրաբաշխ։ Նրա լանջերից բխում են մի շարք գետակներ և բազմաթիվ հորդառատ ու սառնորակ աղբյուրներ։ Առանց Արագածի կչորանար ու կիսաանապատի կվերածվեր Արարատյան արգավանդ դաշտի զգալի մասը։ Արագածի բարձր լանջին ծվարում է Քարի լճակը։ Իսկ գագաթից ոչ հեռու կա օդերևութաբանական կայան, որտեղ տարին բոլոր կատարվում են դիտումներ։ Արագածը մեր բանաստեղծներին ու գրողներին հմայող սարերից մեկն է։ Նրա հարավային լանջին դեռ մնում են միջնադարյան Ամբերդ հայտնի բերդի ավերակները։



Նեմրութ

**ՆԵՄՐՈՒԹ.** Աշխարհի ամենագեղեցիկ սարերից մեկն է։ Գտնվում է Վանա լճի արևմտյան մասում և ծովի մակերևույթից ունի 3050 մ. բարձրություն։ Լեռան կատարին, նրա ձագարաձև խառնարանում գտնվում է մի գեղեցիկ ու կապուտակ լիճ։ Նեմրութը սովորաբար կոչվում է Մշո դաշտի փարոս։ Մշո դաշտից Նեմրութը երևում է իր ամբողջ հոյակապությամբ։ Նրա լանջերը տեղ-տեղ պատած են անտառներով։ Լեռան գլխավոր գագաթին հարավային կողմից միացած է մի այլ սար, որը կոչվում է Գրգուռ։ Գրգուռ լեռան վրա կան շարքով դասավորված մի շարք ցցվածքներ։ Մուշի դաշտի հայ բնակչությունը այդ ցցվածքների հետ կապված պահպանել է մի ավանդություն, ըստ որի, Բելն է այստեղ իր ուղտերի քարավանով քարացել։

**ԲՅՈՒՐԱԿՆ։** Գտնվում է Արաքս գետի ակունքի



Նեմրութի խառնարանում գտնվող լիճը

շրջանում։ Հրաբխային բարձրավանդակ է և նման է Արագածին։ Հայկական լեռնաշխարհի ամենաջրառատ շրջանն է։ Հայերը Բյուրակն են կոչել (10.000 աղբյուրներ կամ խիստ շատ աղբյուրներ) պարզապես այն պատճառով, որ ձյան հալոցքից առաջացած ջրերը և անձրևաջրերը այստեղ սնունդ են տալիս հազարավոր աղբյուրների, իսկ թուրքերը թարգմանել են Բինգյոլ ձևով, որ նշանակում է հազարավոր լճակներ։ Այդ բազմաթիվ աղբյուրները բխում են գետնի տակից դեպի վեր և նման են փոքրիկ լճակների։ Բարձրավանդակի վրա կան երեք լեռնագագաթներ, որոնցից մեկը կոչվում է Սրմանց։ Հենց նրա լանջերից էլ սկիզբ է առնում Արաքսը՝ Հայաստանի մայր գետը։ Բյուրակնը պատած է փարթամ արոտավայրերով ու խոտհարքներով, ունի մաքուր ու առողջարար օդ, սառնորակ աղբյուրներ։ Բյուրակնը գովերգվել է հայկական ժողովրդական երգերում։

**ԹՈՆԴՈՒՐԱԿ** կամ ԹՈՆԴՈՒՐԵԿ. Մասիսից հարավ-արևմուտք գտնվող այս լեռը Առաջավոր Ասիայի միակ գործող հրաբուխն է։ Դրա խառնարանից դուրս են գալիս ծծմբային գազ, ջրային գոլորշի, տարբեր մեծության քարակտորներ, իսկ ստորոտներից բխում են եռման աստիճանի հասնող հորդառատ հանքային ջրեր։ Այդ հանքային ջրերը, որոնք թափվում են Արևելյան Եփրատ



Թոնդուրակ կամ Թոնդուրեկ

գետի մեջ, այնքան տաք են, որ միս եփում են։ Թոնդուրեկն ունի երկու կատար։ Դրանց բարձրությունը 3000 մ-ից անցնում է։ Թոնդուրեկից արևմուտք գտնվում են Ծաղկանց լեռները, որոնք ձգվում են բավական ընդարձակ տարածության վրա և հայտնի են իրենց ճոխ արոտավայրերով ու ծաղկավետ լանջերով։

**ԿԱՊՈՒՏՋՈՒՂ.** Սովետական Հայաստանի երկրորդ բարձր լեռն է։ Բարձրությունը ծովի մակերևույթից 3906 մ. է։ Գտնվում է Զանգեզուրի լեռնաշղթայի հարավային մասում, Ղափանի շրջանի արևմտյան սահմանագլխին։ Լանջերը ծածկված են կանաչ խոտի և գույնզգույն ծաղիկների թավիշով։ Լանջերից բխում են հանքային սառնորակ շատ աղբյուրներ։ Այստեղից է սկիզբ առնում Ողջի գետը։ Գագաթին տեղ-տեղ ձյունը պահպանվում է ամբողջ տարին։ Կապուտջուղին առանձին գրավչություն են տալիս վայրի կենդանիները, հատկապես քարայծը և վայրի ոչխարը, որոնք այստեղ կազմում են ամբողջական հոտեր։ Լեռան արևելյան ստորոտին տեղադրված է Քաջարան նորաշեն քաղաքը, որն ավելի է գեղեցկացնում տեղի, առանց այն էլ գեղեցիկ, համայնապատկերը։



## ՀԻՆԳ ՏԱՐԵԿԱՆ ԼԻՃԸ

*Ավտոմեքենան թեքվում, տանձուտից մտնում է խնձորի այգին. նորից կիլոմետրեր. անտա՞ռ է: Ոչ, կանոնավոր ծառաշարերը պատմում են քրտնաթոր աշխատանքի մասին: Պտուղների ծանրությունից ճյուղերը կիսաշրջանաձև կռացել են, ծառը վրան է դարձել, գունագեղ վրան, և ի՜նչ բուրմունք:*

*Այս հեքիաթային այգին գտնվում է Լեռնային Ղարաբաղի Ստեփանակերտի մատույցներում, Կարկառ գետի հովտում: Դա խաղողապտղագործական սովխոզն է. ավելի քան հարյուր հեկտարի տարածության վրա փռված են այգիները: Կարկառ գետը գալիս անցնում է՝ այգու զառիթափ ափերը քերելով, կարոտ՝ ինքը այգուն, այգին՝ իրեն:*

*Ջրին մոտ, առանց ջրի:*

*Այգիներից վեր լեռներ են, անտառապատ լեռներ: Մոտ, շատ մոտ է Եղնիկի աղբյուրը, ապա Եղնիկի «ծագուկները»— տասնյակ աղբյուրակներ մտնում են խոր-գոգավոր ձորն ու խառնվում գետի ջրերին: Դրանք քիչ են լիճ ունենալու համար. պետք էր գետը բարձրացնել...*

*Այժմ ավելի քան հիսուն հազար քառակուսի մետր տարածությամբ, լեռների գրկում, երիզված դալարագեղ անտառով, ծփում է... Կապուտանը. այսպիսին է նորածինի անունը: Լիճը կարող է 10—15 անգամ լիապես ջրել սովխոզի այգիներն ու բանջարանոցները: Կապուտանը դարձել է նաև հանգստավայր: Լճում բազմացվում է կարմրախայտ ձուկը: Լեռնային այդ նոր գեղեցկուհին արդեն հինգ տարեկան է:*

## ՋԵՐՄԱՆԱՀԵՐԱՑ ՍՅՈՒՆԵՐ

Ով եղել է Երևանի մանկական երկաթուղում, նա տեսած կլինի Հրազդանի կիրճի սյունաձև բազալտները: Նույնանման քարե սյուներ կան նաև Գառնիի կիրճում, Արփա, Որոտան, Ախուրյան և այլ գետերի կանիոններում: Կարծես մի գերբնական ձեռք քարե սյուները խնամքով շարել է կողք-կողքի, ստեղծելով աննման պատկերներ մեր ձորերում:

Քարե սյուները սովորաբար 4—6 նիստ ունեն և ուղղահայաց դրությամբ են դասավորված, սակայն երբեմն հովհարաձև են, ինչպես, օրինակ, Հրազդանի կիրճում՝ Արզնու մոտ, Արփա գետի հովտում՝ Ջերմուկի ճանապարհին և այլն:

Քարե սյուները հետևյալ կերպ են առաջացել: Բարձր ջերմաստիճանով հրահեղուկ լավան դուրս գալով երկրի ընդերքից՝ ծածկում է բոլոր անհարթությունները ու սառչում, սակայն այնտեղ, որտեղ նա մեծ հաստություն ունի, սառեցման պրոցեսը դանդաղ է ընթանում և պայմաններ են ստեղծվում սյունաձև անջատումների գոյացման համար: Ֆիզիկայից մեզ հայտնի է, որ մարմինները սառչելիս փոքրանում են, սեղմվում: Սառչող լավան ևս սեղմվում է, ճեղքեր առաջացնում, որոնք դասավորվում են լավայի մակերևույթին ուղղահայաց ուղղությամբ և լավայի շերտը մասնատվում է կանոնավոր, մի քանի տասնյակ մետր բարձրության սյուների:

Սյունաձև անջատումները յուրահատուկ են հատկապես բազալտային լավային: Արագ սառչող լավան սյունաձև անջատումներ չի տալիս, այլ մասնատվում է տձև բեկորներով:

# ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Սահարայում յուրաքանչյուր տարի նըկատվում է 160 հազար միրաժ։ Որոշ վայրերի համար միրաժն այնքան յուրահատուկ է, որ նույնիսկ կազմել են մշտական միրաժների քարտեզներ։

Ամազոնի դելտայում ապրում է կոկորդիլոսի մի տեսակ, որն ունի համեղ միս (հատկապես պոչի մասը)։ Այս կենդանին կարող է ամիսներով ապրել առանց սննդի ու ջրի։ Տեղացիները հավաքում են այդպիսի կոկորդիլոսների, կապկպում միմյանց և մառաններում պահում որպես կենդանի պահածո։ Պետք եղած դեպքում հանում են և օգտագործում։

Բնական գունավոր բամբակ առաջին անգամ ստացել է սովետական պրոֆ. Ի. Կ. Մաքսիմենկոն։



Բիրմայում, Իրաքում, Թունիսում այժմ 14-րդ դարն է, իսկ Ճապոնիայում՝ 27։

Հնդկաստանի համար արտահանման մեջ կարևոր տեղ է գրավում կապիկների արտահանումը՝ տարեկան 12 հազար կապիկ։

Աֆրիկայի ափերին անսովոր հովիվների կարելի է հանդիպել։ Այստեղ ոչխարի հոտերին հսկում են ջայլամները։ Այս ուժեղ, արագավազ թռչունները ջանասիրությամբ կատարում են հովվի իրենց պարտականությունները։

Ամերիկայի լեռներում գտել են հնագույն կենդանիներից մեկի՝ դինոզավրի քարացած ձու, որը երկու անգամ մեծ է ջայլամի ձվից և ունի մոտավորապես 120 միլիոն տարվա պատմություն։

Գոյություն ունեն այնպիսի ձկներ, որոնք չորացող լճերի տիղմի մեջ 2—3 մետր խորության տակ ապրում են առանց շարժվելու մինչև ջրերի առատանալը։



Կախոան մրրկահավերի խմբին պատկանող փոքրիկ թռչնակ է։ Գրեթե իր ամբողջ կյանքում նա սլանում է Ատլանտյան օվկիանոսի ալիքների վրայով և միայն բույն հյուսելու ժամանակ թռչում է դեպի իր հայրենիքը՝ Բերմանդյան կղզիները։ Բերմանդներից բացի, որանք ուրիշ ոչ մի տեղ ձագեր չեն հանում։

Կար ժամանակ, երբ այս թռչնակները անթիվ երամներ էին կազմում։ Բայց ահա 1910 թվականին Բերմանդներում սարսափելի սով սկսվեց և կախոանները դարձան կղզու բնակիչների սննդի համարյա միակ միջոցը։

Կենդանի մնաց միայն մի քանի թռչուն։ Մեր ժամանակներում մի նոր հարված հասցվեց այս հազվագյուտ թևավորներին։ Ամերիկայի Միացյալ Նահանգները կղզիներում կառուցեցին ռազմական բազաներ։ Հողերի մեծ մասը փիրածվեց օդանավակայանների։ Բուլդոզերները քանդեցին թռչունների բները։ 1948 թվականին Բերմանդյան կղզիները ժամանած թռչնաբանների հանձնաժողովը եկավ այն եզրակացության, որ կախոանները լրիվ ոչնչացված են։ Սակայն երեք տարի անց, հայտնաբերվեցին իրենց տեղերից քշված մի քանի թռչնակներ։ Այժմ Բերմանդյան կենդանաբանական կայանի մի խումբ գիտնականներ կախոաններին փրկելու միջոցներ են որոնում։



Անտարկտիդայում ընկնող արևի ջերմությունը ամռանը նույնքան է, որքան Տաշքենդում, սակայն այդ ջերմության 92 տոկոսն անդրադարձվում է Անտարկտիդայի սպիտակության պատճառով։

Սովորական մեղվի վերամբարձ ուժը իր քաշի նկատմամբ ավելի մեծ է, քան ամենակատարելագործված ինքնաթիռինը։ Մեղուն իր քաշի չափ ծաղկափոշի ու նեկտա՛ր է բարձրացնում, իսկ ինքնաթիռը՝ մեկ քառորդի չափ միայն։





Կաշալոտի լյարդը, որը կշռում է 400 կիլոգրամ, պարունակում է այնքան վիտամին «Ա», որքան՝ 100 տոննա կարագը։

Անտարկտիդայի Միրնի շըրջանում յուրաքանչյուր սառցադաշտ օվկիանոս է նետում 59 հազար քառակուսի մետր սառույց։

Սովետական Միության անտառները գրավում են ավելի քան 832 միլիոն հեկտար տարածություն, այնքան, որքան ԱՄՆ-ի, Անգլիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Իտալիայի տերիտորիաները միասին վերցրած։

**100** կգ. ռաճու սերմից կարելի է ստանալ 21 կգ. յուղ, իսկ եղևնու սերմից՝ 35 կգ.։

ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—1. Աշխարհամաս, որը մի շարք կուլտուրական բույսերի (կարտոֆիլ, ծխախոտ) հայրենիքն է եղել: 6. Գետ՝ Հարավային Ամերիկայում: 7. Սոցիալիստական լագերին պատկանող պետության մայրաքաղաք, որը հիմնադրվել է 800 տարի առաջ: 10. Պետություն՝ Աֆրիկայում, որը հարուստ է ուրանով և ալմաստով: 12. Կղզի՝ Միջերկրական ծովում: 14. Կղզի՝ Տիրենյան ծովում, որտեղ 1906-ից մինչև 1913 թվականը ապրել է Մաքսիմ Գորկին: 15. Օվկիանոս, որի ջրերում 1912 թվականին խորտակվեց «Տիտանիկ» շոգենավը: 18. Կղզի՝ Ֆիլիպինյան արշիպելագում: 19. Պետություն՝ Եվրոպայում, որտեղ ծնվել և ապրել է մեծ հեքիաթագիր Անդերսենը: 20. Քաղաք՝ Չիլիում, որտեղ ֆուտբոլի աշխարհի առաջնության մատչերն անց էր կացնում ՍՍՌՄ հավաքական թիմը: 22. Լեռ՝ Հայկական լեռնաշխարհում: 23. Շրջկենտրոն՝ Արագածի լանջերին: 24. Կղզիների խումբ՝ Աֆրիկայի հյուսիս-արևմտյան մասում:*

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ—2. Միութենական հանրապետության մայրաքաղաք: 3. Քաղաք՝ Ճապոնիայում: 4. Նորվեգացի նշանավոր բևեռախույզ-ճանապարհորդ, որը իր ընկերոջ հետ միասին դահուկներով փորձեց հասնել Հյուսիսային բևեռ: 5. Աշխարհամաս, որն իր մակերեսով 5-րդ տեղն է գրավում: 8. Պետություն՝ Ասիայում, որը տարածված է հազարավոր կղզիների վրա: 9. Ամազոնի վտակներից: 11. Լիճ՝ Հյուսիսային Ամերիկայում, որի ափին է գտնվում, իր մեծությամբ, ԱՄՆ-ի երկրորդ քաղաքը: 13. Լիճ՝ ՍՍՌՄ-ում, որից ստացվում է կերակրի աղ: 14. Գետ՝ Անգլիայում: 16. Ամուր գետի վտակներից: 17. Աշխարհագրական լանդշաֆտ: 20. Քաղաք՝ Սև ծովի ափին: 21. Լեռնաշղթա՝ Եվրոպայում, որի վրա*


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

**Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кэрмир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—11—83, 2—39—06:

ՎՖ 07533: Պատվեր՝ 77 , Տպաքանակ՝ 17.600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/II 1961 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան փ. № 91:

Գինը 20 կ.



գտնվում է այդ աշխարհամասի ամենաբարձր գագաթը

Կազմեց՝ ԱՇՈՏ ՀԱԼԱՋՅԱՆ

(Կիրովականի № 18 գիշերօթիկ դպրոցի ուսուցիչ)

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

1. Միջնադարյան նշանավոր հայ աշխարհագրագետի անունը: 2. Նույն աշխարհագրագետի ազգանունը: 3. Քաղաք՝ Հայկական ՍՍՌ-ում: 4. Հայկական լեռ: 5. Լեռնագագաթ Հայաստանում: 6. Գյուղ Շիրակում: 7. Շինանյութերի արդյունաբերության խոշոր կենտրոն: 8. Բնակավայր՝ Ախուրյանի ափին: 9. Քասաղի վտակներից: 10. Քաղաք: 11. Լեռնագագաթ՝ Հայկական ՍՍՌ-ի հարավում: 12. Գետ՝ Սևանի ավազանում: 13. Հին հայկական մայրաքաղաք: 14. Քաղաք՝ պատմական Հայաստանում: 15. Գետ՝ Հայաստանում: 16. Ջրվեժ՝ Հայկական ՍՍՌ-ում: 17. Արաքսի ձախակողմյան վտակներից: 18. Կարոտ:

Ճիշտ լրացնելուց հետո, ընդգծված հինգ ճառագայթներում կենտրոնախույս ուղղությամբ կկարդացվեն Հայկական ՍՍՌ-ի հինգ լճերի անունները:



Կազմեց՝ Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

1. Ճանապարհորդը նայելով գնացքի պատուհանից, սկզբում բևեռային աստղը տեսնում էր դիմացը՝ գնացքի շարժման ուղղությամբ. որոշ ժամանակ անց, նա նկատում է, որ բևեռային աստղը երևում է ուղիղ ձախ կողմից: Գնացքը ի՞նչ ուղղությամբ փոխեց իր ընթացքը:

2. Ի՞նչ ուղղություն պետք է ունենա փողոցը որպեսզի կեսօրին շենքերը ստվեր չգցեն նրա վրա Այդպիսի փողոցներ կան նաև Հայաստանի քաղաքներում:

3. Երկրագնդի ո՞ր մասում դեպի հյուսիս թռչող ինքնաթիռը, չփոխելով իր ուղղությունը, կշարունակի թռչել դեպի հարավ:

4. Աշխարհագրական ո՞ր լայնությամբ կարելի է մի լրիվ պտույտ նավարկել՝ առանց ցամաքի հանդիպելու:



5. Երկու ինքնաթիռ հասարակածից միաժամանակ հավասար արագությամբ թռչում են հակառակ ուղղությամբ՝ մեկը դեպի հյուսիս, մյուսը՝ դեպի հարավ: Նրանք որտե՞ղ կհանդիպեն իրար և յուրաքանչյուրը որքա՞ն ճանապարհ կանցնի:

6. Երկու ինքնաթիռ Երևանից միաժամանակ հավասար արագությամբ թռչում են հակառակ ուղղությամբ՝ մեկը դեպի հյուսիս, մյուսը՝ հարավ: Նրանք ո՞ր կետում կհանդիպեն իրար: Գտե՛ք այդ կետի աշխարհագրական կոորդինատները (լայնությունը և երկայնությունը):

7. Քարտեզի կամ գլոբուսի վրա ի՞նչպես կարելի է որոշել ցանկացած զուգահեռականի մեկ աստիճանի երկայնությունը:

8. Առարկաները որտե՞ղ և ե՞րբ ստվեր չեն ունենում: Նշեցե՛ք տեղը, ամսաթիվը և ժամը:

9. Առարկաները որտե՞ղ վեց ամիս իրենց ստվերները կեսօրին անընդհատ մի ուղղությամբ, իսկ վեց ամիս հակառակ ուղղությամբ են գցում:

10. Ձեր բնակավայրում առարկաները տարվա մեջ ե՞րբ են ամենակարճ ստվերն ունենում, երբ՝ ամենաերկարը:

11. Երկրագնդի ո՞ր մասում տարվա ընթացքում մեկ լրիվ օր (24 ժամ) ցերեկ է լինում, մեկ լրիվ օր՝ գիշեր:

Գ. ԱՎԱԳՅԱՆ

20 կ.

ԻՆԴԵՔՍ 77806

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



*ԾԱՂԻԿՆԵՐ*

*ՄՈՎՍԻՍՅԱՆ ԱՐՄԵՆ*
*(Ստեփանավանի Պուշկինի անվ. դպր. 3-րդ դաս. աշ.)*

*ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ*

*ԽԼՂԱԹՅԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ*
*(Երևան, 6 տարեկան)*

# «ՊԻՈՆԵՐԻ» ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ

Որպեսզի գրողները ավելի լավ պատմվածքներ, բանաստեղծություններ ու ակնարկներ գրեն, որպեսզի ավելի գեղեցիկ լինեն ամսագրում տպագրված նկարները, որպեսզի ավելի հետաքրքիր դառնա ձեր սիրելի հանդեսը, Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ սահմանվել են «Պիոների» տարեկան մրցանակներ։

Ամբողջ տարվա ընթացքում տպագրված գրական գործերից լավագույնը արժանանում է ամսագրի մրցանակին։ Այդ ստեղծագործության հեղինակն ստանում է դրամական պարգև և ամսագրի հուշագիր։ Նույնպիսի մրցանակ է ստանում նաև տարվա ընթացքում տպագրված լավագույն նկարչական աշխատանքը։



ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

1963 թվականի մրցանակակիրները դարձան գրող Հովհաննես Ղուկասյանը և նկարիչ Կարեն Սմբատյանը։ Դուք երևի հիշում եք «Ջելսոմինոն խաբեբաների աշխարհում» հեքիաթի ձևավորումը։ Ահա այդ աշխատանքի համար էլ Կարեն Սմբատյանն արժանացել է մրցանակի, իսկ Հովհաննես Ղուկասյանը պարգևատրվել է «Մուկուչի գրպանի ընդունիչը» և «Պատմություն Թորոս Ռուլինի, փոքրավորի և մանուշակների մասին» պատմվածքների համար։

Եկեք, երեխաներ, շնորհավորենք մեր ամսագրի առաջին մրցանակակիրներին և ցանկանանք նրանց նորանոր ստեղծագործական հաջողություններ։

«ՊԻՈՆԵՐԻ» ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ